ՎԱՐԱՆ ՈՅԺ

# ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ

**(բանաստեղծութիւն)**

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԻԴ.

ԳԱՀԻՐԷ
2019

ՎԱՐԱՆ ՈՅԺ

# ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ

**(բանաստեղծութիւն)**

Նախաբան՝

Հ. ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԻԴ.

ԳԱՀԻՐԷ
2019

*Ջահակիր* շաբաթաթերթ
Տնօրէն եւ խմբագիր՝ Մարտիրոս Պալաեան
Խմբագրական խորհրդատու՝ Հայկ Աւագեան

Այս գրքոյկը հրատարակուած է սահմանափակ տպաքանակով։
Ան չէ նախատեսուած վաճառքի համար։ Անվճար կը տրամադրուի
գրադարաններուն եւ նիւթով հետաքրքրուողներուն։

Ստանալու համար դիմել՝
tchahagir@journalist.com

# ՆԱԽԱԲԱՆ

Եգիպտահայ թատերագիր, բանաստեղծ եւ գրաքննադատ Վարան Ոյժ *Յակինթի պարտէզը* քերթուածը յօրինած է 1994-ին։ Ան առաջին անգամ տպագրուած է 2016-ին, *Բանաստեղծութիւն* առցանց գրական հանդէսի Բ. հատորին մէջ (խմբագիրներ՝ Մարուշ Երամեան եւ Իշխան Չիֆթճեան)։

Բաղկացած է վեց մասէ՝ «Ճնճղուկներու վերադարձը», «Գիրքին հեղինակութիւնը», «Էականն ու զարտուղին», «Յաւերժական ցնծութիւն», «Հայր իմ որ յերկրի ես» եւ «Յակինթի պարտէզը»։

Արդիապաշտ աքատեմականները այնտեղ պիտի փնտռեն՝ սեռային (ժանրային) եւ ոճական առանձնայատկութիւններ, ամուր կամ տկար կառուցուածք, թարմ կամ հինցած գաղափարներ, հետաքրքրական կամ անհետաքրքրական լուծումներ, ինքնատիպ կամ ոչ-ինքնատիպ մօտեցումներ, եւ այլն, որպէսզի վերջապէս կատարեն գործին թուանշային չափանշումը՝ վատ, լաւ, շատ լաւ կամ գերազանց, եւ բանաստեղծին շնորհեն դասակարգային կարգաւորում՝ անտաղանդ, տաղանդաւոր կամ հանճարեղ։

2017-ին վերահրատարակուած *Յտեսութիւն, ծիտ* վէպի վերջաւորող հատուածներէն մէկուն մէջ, Արամ Պաչեան կը հարցնէ. «Կապիտալիզմի համակենտրոնացման ճամբարներում կը կարողանա՞յ վերապրել այն գրականութիւնը, որը (ձանձրալի է), (չի սպառւում), (նորաձեւ չէ), (Originality չէ), (հանճարեղ չէ), (անկրկնելի չէ), (ցնցող չէ), (Ան-թարգմանելի է)։ «Մօտ լինելով Սոնթագին»։»[1]

Այս ամէն «չէ»-երն ու «է»-երը կրնան վերաբերիլ Վարան Ոյժի բանաստեղծութեան, ինչպէս նաեւ նոյն հատորին մէջ հրատարակուած այլ ժամանակակից գործերու։

Բանաստեղծը չի փնտռեր մասնաւոր ընթերցող մը, ան իր միտքը չի սեւեռեր հասկնալի դառնալու համար։

Չկայ կեդրոնական գաղափար մը՝ որուն շուրջ կը դառնայ եւ որուն անպայմանօրէն կ՚ուզէ հասնիլ բանաստեղծը։ Կարելի չէ կանգ առնել մէկ կէտի վրայ, կամ մէկ գաղափար մը ընդունիլ իբրեւ կեդրոնական, այլ կարելի է գտնել իրեւ-րահիւսուած գաղափարներ, զանազան գաղափարներու համադրութիւններ, գաղափարներ՝ որոնք կրնան տեւել ընդամէնը մէկ տող։ Քիչ մը կրնան նմանիլ Տըպիւսիի *Փրելիւտ*ներուն, ուր ընդամէնը մէկ հատած մը կրնայ ներկայացնել կառուցուածքային ամբողջ մաս մը։

*Յակինթի պարտէզ*էն երեք տարի առաջ ունեցած հարցազրոյցի մը ընթացքին Ոյժ մտորումները կ՚արտայայտէ իր սեփական բանաստեղծութիւններուն նկատմամբ.

[1985-*ին*] *կը սկսի եւ մինչեւ այսօր կը շարունակուի իմ նորագոյն շրջանը՝ բանաստեղծութիւններու, որոնք՝*

*ա.- ընդհարումներ են գոյութեան հետ, եւ կը ջանան փրցնել ու տողերու մէջ առանձնացընել ինչ որ կարելի է, այդպէսով ալ զօրանալով հետզհետէ, կարենալ ընդհարելու համար գոյութեան հետ, որ իւրաքանչիւր ընդհարումէ կ'ահագնանայ։*

*բ.- վերադարձներ են անցեալի կորսուած կեանքին, ընկալումներ՝ դիւրաբեկ յիշատակներուն, եւ մշտասեւեռ խորհրդածութիւններ, որովհետեւ ինչո՞ւ ապրիլ, եթէ ապրուածը կորսուած է։*

*գ.- անդրադարձներ են առօրեային, ուղղակի առնչուած ըլլայ անձին, կամ ոչ։*[2]

## ԵԶԱԿԻ ԱՌԱՋԻՆ ԴԷՄՔԻ ՊԱՏՈՒՄԸ ԵՒ ԻՆՔՆԻ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Բանաստեղծութիւնը գրուած է եզակի առաջին դէմքով՝ Ես-ով։ Եզակի առաջին դէմքի պատումին յաճախ կը դիմեն բանաստեղծները։

Ես-ը բաղկացուցիչ եւ անբաժանելի մասերէն մէկն է ինքնին (self), կարելի է ըսել, անոր արտայայտութիւնը։ Ես-ը՝ երբ կը ներկայանայ իր փորձառութեան եւ բնականութեան ընդմէջէն, կը դառնայ խորապէս մեկնողական ու բացայայտիչ։

Հայ անիշխանական (anarchist) գրող Բարսեղ Շահպազ կու տայ հետաքրքրական բացատրութիւն մը. «Եսասիրութիւնը իբր բառ մնալով միշտ անփոփոխ, «Եսասիրութիւն», մարդոց հեղդ մտածողութիւնը զայն հասցուցած է չափազանցութեան շատ արտառոց սահմաններու եւ նոյնացուցած՝ եսամոլութեան, եսապաշտութեան եւ օտարատեցութեան հետ։ Եւ ասի ա՛յնքան ճշմարիտ է որ ֆրանսական մեծ բառգիրքեր ստիպուած կը զգան ինքզինքնին եսասիրութիւն (égoïsme) բառին դէմ դնել սա դիտողութիւնը. - «չշփոթել եսամոլութեան (égotisme) հետ։»[3] Ապա ան կ'աւելցնէ. «[Դ]րէ՛ք անհատն ալ իր ինքնութիւնը, իր «ես»ը պահպանելու եւ զայն սիրելու վիճակին մէջ բնութեան պահանջածին պէս» եւ մարդիկ կը դառնան բարի ու այլասէր։[4]

Ես-ը, իր այս տեսքին մէջ, կը բանայ անձնականութենէն անդին արտայայտիչ ներաշխարհ մը։ Ընդհակառակը, ըստ գործածութեան եղանակին, բանաստեղծի մը «անկողմնակալ» դիտումները՝ իբր երրորդ կողմի դիտորդ, շատ աւելի վճռական Ես մը կրնան մատնել քան ուղղակիօրէն Ես-ով արտայայտուողները։ Տիգրան Պասկեւիչեան կը մէջբերէ ու կը ծանօթագրէ Պարոյր Սեւակէն երկտող մը.

*«Մարդ կայ՝ ելել է շալակն աշխարհի,*
*մարդ էլ կայ՝ աշխարհն է շալակած տանում».*
*ասում էր Սեւակ Պարոյրն՝*
*իր տեղն այդպէս էլ չճշտելով։*[5]

Չճշդել իր տեղը կը նշանակէ իր Ես-ը բարձր դասել երկուքէն: Երրորդ կողմ մըն է, որ կը տեսնէ ուրիշը՝ առանց գիտակցելու իր սեփական Ես-ին դիրքորոշումը:

Վարան Ոյժի Ես-ը շարժուն է, կը շարժի տարբեր առարկաներու մէջէն՝ տաճար, պատկեր, արձան, գերեզմանատուն, շիրիմ, անդրի, բանաստեղծութիւն, դրախտ, յակինթի պարտէզ, տա Վինչիի *Վերջին ընթրիքը*, ինչպէս նաեւ անձնականացումներու ընդմէջէն՝ Աստուած, Սիրանոյշ, Մարքի տը Սատ, տա Վինչի, Պեղդրաֆիոյ, Յիսուս, Հիթլէր, Ֆարուք, Այզընհաուըր, Թալէաթ, Միթերան: Կը շարժի այս բոլորին ընդմէջէն, նաեւ կը շարժի ներսէն դուրս, Ես-էն դէպի առարկան եւ ոչ հակառակը:

Ես-երու այս բազմաբնոյթ կեցութիւնները յետարդիապաշտները պիտի անուանէին մասնատուած (fragmented) ինքն՝ դրական իմաստով, իբրեւ մասնակցութիւն արդիականութեան կեանքին: Ասիկա կարելի է ընդունիլ եթէ մոռացութեան մատնենք Ոյժի ենթակայէն դէպի առարկան գացող Ես-ը. անիկա յարմարուողական ես մը չէ՝ որ դիմացը կանգնած առարկաները կը տեղադրէ քով քովի, այլ ընտրողական Ես մըն է՝ որ առարկաները կ'ընտրէ ըստ ներքին համոզումներու, համոզումներ՝ որոնք կը շրջին մարդկային անհեթեթութիւնները, աւելորդ նշանաբանները, միտքի անիմաստ թափառումները մէջտեղ հանելու եւ «բանաստեղծականապէս» քննականացնելու շուրջ:

Վստահաբար ասիկա սեւակեան Ես-ը չէ.

> ***Ես - սրտիս մէջ Դարի Տառապանքը եւ Հանճարի չունչը դարերի.***
> ***Ես - տրտմաթախիծ, ինչպէս օրը արեւից առաջ եւ խնդութեամբ ցամաք:***[6]

Կամ՝

> ***... Ես մի պոէտ, անյայտ տակաւին,***
> ***Խոհերի անտես մակոյկին նստած՝***
> ***Զգիտեմ արդեօք կը լինի՞ քամի,***
> ***Որ առաջ մղի իմ առագաստը,***
> ***Թէ ինքս պիտի չապիկն իմ՝ կայմին***
> ***Առագաստ չինեմ, նոր լինեմ վստահ,***
> ***Որ երգն իմ նորեկ, նաւը իմ գանձի***
> ***Պիտի ընթանայ օվկիաններն ի վեր***
> ***Եւ փոթորկածուփ ծովերում անծիր,***
> ***Որպէս գալիքի անմարմին նուէր,***
> ***Պիտի չնչով իր անանձնապատկան***
> ***Վառուի որպէս վէս, սրբազան պատգամ...***[7]

Այստեղ խօսողը կշռական, տիրական ու ինքնարտօնեալ Ես-ն է: Առաջին պարագային իր մէջ կրել կու տայ աշխարհի մտահոգութիւններն ու տառապանքները, կը խօսի համայն մարդկութեան անունով իբրեւ ամբողջատիրական իրականութիւն, երկրորդ պարագային համոզուած է բանաստեղծութեան, հետեւաբար *իր* բանաստեղծութեան, վէս ու սրբազան պատգամներուն, համոզուած է որ բանաստեղծութիւնը ուրիշներուն պատգամներ տալու կոչումը պէտք է ունենայ, հետեւաբար, բանաստեղծին ընծայելով դասակարգային հեղինակութիւն ու առաւելութիւն մը ուրիշներու նկատմամբ:

Օյժի Ես-ը աւելի կը նմանի չարենցեան Ես-ին: 1924-ին, Չարենց, երկու կառուցողապաշտ (constructivist) ճարտարապետներու՝ Միքայէլ Մազմանեանի եւ Կարօ Հալաբեանի հետ, Մոսկուայի մէջ կը խմբագրէ *Ստանդարտ*ի միակ համարը, ուր, ի միջի այլոց, կը գրէ.

*[Ա]րուեստի եւ գրականութեան այսօրուայ անելիքների մեր կուրսը առաջադրելիս մենք ելել ենք այն հիմնական տեսակէտից, որ պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակաշրջանում արուեստը պէտք է ոչ թէ արտացոլի, այլ ամենաակտիւ, ամենագործնական ու ամենաանմիջական ձեւով պայքարի:*[8]

Ոչ թէ արտոլցոլող է, այլ պայքարող, այսինքն՝ մասնակցող:

Պայքարող Ես-ը ամենավտանգաւորն է. զայն պէտք է սպաննէ սթալինիզմը, իր ծոցէն վտարէ հայկական գաղթօճախը: Պայքարող Ես-ը մասնակցողական Ես-ն է, որ ինքզինք կը զգայ իրերու դրութեան ներսը: Մինչդեռ ընտրելախաւերուն համար անհրաժեշտ է դուրսէն դիտող, իրերէն օտարացած Ես մը:

Օյժի մօտ Ես-ը լեզուական պարտականութենէն կ՚անցնի ենթակայական պարտաւորութեան ու պատասխանատուութեան: Գրականօրէն պարտականութիւն ստանձնելու համար Ես-ը կը տեղադրէ տարբեր երեւոյթներու մէջ՝ առարկաներու, դէմքերու, մարդկային խումբերու, արուեստի գործերու, եւ ներքնականապէս կը կապուի անոնց հետ:

Ահաւասիկ *Ցակինթի պարտէզ*էն քառատող մը.

*«Խորհրդաւոր Ընթրիքը» որմնակերտի համար*
*Տարիներով փնտռած ու երազած*
*Եւ վերջապէս փոքրիկ մի կտաւի վրայ*
*Մեզ վիշտ ւտակ թողած Յիսուսը, Պեղդրաֆիոն, Ես:*

Ես-ը տա Վինչիի *Խորհրդաւոր ընթրիք*ը ընկալողի դերը չէ որ կը ստանձնէ, այն անձը չէ՝ որ հմայուող, անձայն ու հնազանդ թանգարանային դիտորդի դիրք կը գրաւէ, եւ պարզապէս իբրեւ այդպիսին որմնանկարը կ՚անցնի իր դիտակի

ընդմէջէն ու ինքզինք կրաւորապէս կը տեսնէ այնտեղ։ Ես-ը մասնակցող մըն է որմնանկարի արժէքին, կամ արժէքային շերտերէն մէկուն, ընդհանրականութիւններու միջոցով, որոնց իմաստները կարելի է որսալ յիշեալ քառատողը նախորդող հատուածներուն ընդմէջէն։ Այսպէս, Ես-ը (բանաստեղծը) ցանկացած է նկարուիլ ոմն նկարիչի մը կողմէ, որպէսզի դիտելի ըլլայ ուրիշներու կողմէ, թէեւ ի՞նչպէս կրնայ նկարիչը բանաստեղծին Ես-ը յայտնաբերել ներսիդէն։ Լէոնարտօ տա Վինչի՝ *Վերջին ընթրիք*ի Յիսուսի դիմանկարին համար իր առջեւ կանգնեցուցած է իր աշակերտ Պելղրաֆիոն։ Կարեւորը արտաքին նմանութիւնն է կամ նմանութեան պատրանքը։ Ի՞նչ փոյթ, եթէ նկարի կեդրոնը գտնուողը Յիսուսն է, Պելղրաֆիոն է կամ բանաստեղծն է, քանի որ անկարելի նմանօրինակութեան, յատկապէս ներաշխարհի անհաւանական վերարտադրութեան մասին է խօսքը։ Յիսուս, Պելղրաֆիոյ, Ես միաձուլուած ամբողջականութիւններ չեն, ոչ ալ օտարացած այլերու յետարդիապաշտական անկապ գոյութիւններու միատեղումներ։ Անոնց գոյութիւնները կը միտին ստեղծել մարդկային ներաշխարհներ՝ դիտուած նկարիչի աչքով, արուեստի գործ մը դարձնելով իրական։

Իրականութիւն մը անկարելի է վերարտադրել ինչպէս որ կայ, աշխարհի մէջ ոչ մէկ բան կարելի է կրկնօրինակել, ռոպոթիզմը մարդկային խելքի ամենէն անկումային դարաշրջանի արտադրութիւնն է։ Դաշնակահարը չի կրնար արտացոլողը ըլլալ երաժշտահանին, նկարիչը չի կրնար վերարտադրողը ըլլալ դէմքին կամ տեսարանին, քննադատը չի կրնար «հարազատ» նկարագրողը ըլլալ ներկայացումին։ Բայց անոնք կրնան ինքզինքնին զգալ ու տեսնել այս բոլորի մէջ, հարազատ զգալ այնտեղ եւ ներաշխարհային մեկնողականութիւն մը առնչել իրենց գործերուն հետ՝ դաշնակահարը իր կատարումին մէջ առնչէ երաժշտահանը, նկարիչը՝ մոտէլը, քննադատը՝ ներկայացումը, առաջինները ըլլալով երկրորդներուն տարբերակները՝ ամբողջապէս ինքնուրոյն գիծերով հանդերձ, բայց ոչ երբեք անոնց արտայայտութիւնը կամ արտացոլութիւնը։ Պելղրաֆիոյ կը ներկայացնէ Յիսուս, իսկ Յիսուս կը ներկայանայ Պելղրաֆիոյի շնորհիւ, բայց այս բոլորը անիմաստ է առանց տա Վինչիին։ Իսկ Ե՞ս։ Ի՞նչպէս կրնայ նկարիչը կտաւին փոխանցել իմ Ես-ս, այնպէս ինչպէս Ես կ'ուզեմ, այնպէս ինչպէս կ'ուզեմ ուրիշները ճանչնան ինծի։

Քաղուած քառատողը կը ներկայացնէ «Էականն ու զարտուղին»-ի վերջաւորութիւնը, այսինքն՝ բանաստեղծութիւնը կը վերջանայ Ես-ով։ Նոյն բանաստեղծութիւնը կը սկսի եւս Ես-ով՝ շեշտադրուած Ե՛ս-ով.

***Ե՛ս էի նստած՝ կարդալու*** Marquis de Sade։

Առաջին եւ վերջին բառերուն նոյնութիւնը (Ես) չի կրնար ուշադրութենէ վրիպիլ։ Առաջինը կապուած է արեւմտեան գրականութեան ամենէն էրոթիք

գրողներէն մէկուն հետ՝ Մարքի տը Սատ, վերջինը՝ ամենէն փիլիսոփայ մտածող-արուեստագէտներէն մէկուն՝ Լէոնարտօ տա Վինչի։ Առաջինը՝ տարփամոլութիւն, բռնութիւն, բռնաբարութիւն, խոշտանգում, խայտառակութի՜ւն, երկրորդը՝ խոհականութիւն, գիտարարութիւն, մարդասիրութիւն։ Բայց չէ՞ որ մարդկային Ես-երուն մէջ երկուքն ալ գոյութիւն ունին, թէեւ կը յաւակնինք միշտ մեզի նոյնացնել երկրորդին հետ։

Ոյժի Ես-ը յաղթական չէ՝ ամենագիտակ, ինքնավստահ, ինքնագոհ կամ ինքնաբաւ չէ, այլ ինքնագիտակից Ես մըն է՝ անընդհատ ինքնավերանորոգուող ու ինքնավերարտադրուող, որ կրնայ պարփակել թէ՛ տարփողականը եւ թէ խոհականը, անոնց միջեւ գտնուող անվերջանալի տարբերակներով։

## ՔԱՂՈՒԱԾՔ

*Յակինթի պարտէզը* խաչաձեւուած, կամ ներթափանցուած, կամ դրուագուած է քանի մը հայ եւ անգլիացի գրողներու գործերէ քաղուածքներով։ Քաղուածքներուն դրութիւնը չէ բացայայտուած, նպատակ չէ դրուած զանոնք շեշտադրելով առանձնացնել։ Բայց բանաստեղծը թողած է բանալի ուղեցոյցներ, օրինակ, լեզուի փոփոխութիւն արեւելահայերէնի կամ անգլերէնի։

Մէյ մը որ քաղուածքը նշմարելի դառնայ եւ գիտակցութիւն գոյանայ անոր շուրջ, դժուար կ՚ըլլայ խուսափիլ առնչութիւններէն։ Բայց առնչութիւնները՝ եթէ հիմնուած են լաւ-վատ յարաբերութիւններու «բացայայտում»-ին վրայ, նպատակ կ՚ունենան ցուցադրել քննադատի գիտելիքի գերակայութիւնը, արտայայտելով փակ ու վերջնագրուած իմաստներ։ Եթէ առնչութիւնները կը դիտուին Ժիլ Տըլէօզի անկեդրոն տարբերակի մօտեցումի անկիւնէն, կարելի կը դառնան բաց իմաստներն ու արտայայտութիւնները։ Բայց կարեւոր է բաց-փակ իմաստներու առումով զանազանել բուն քաղուածքի տեղադրութիւնն ու ընդունումը։ Քաղուածքի տարբերակային մեկնութիւնը չեմ կրնար անպայմանօրէն դիտել դէպի բացութիւն տանող ճամբայ մը, քանզի ասիկա պիտի նշանակէր որ արդիականութիւնը արտադրած է այնքան փակութիւն, որ այժմ անհրաժեշտութիւն կը զգացուի տարբեր ձեւաչափերով բանալ զայն։ Այլ նկատի ունիմ de facto քաղուածքի հետ առնչութիւնը, որ կրնայ տարբեր իմաստներ հաղորդել բնագիրին՝ Տըլէօզի յիշեալ դրոյթով։

Ինքնին խորագիրը՝ *Յակինթի պարտէզը*, քաղուածք մըն է T. S. Eliot-ի *The Waste Land*-ի մէջ գտնուող «Hyacinth garden»-ին։

Բաց աստի, *The Waste Land*-ը կը բովանդակէ հետեւեալ տողերը.

“You gave me hyacinths first a year ago;
They called me the hyacinth girl.”
- Yet when we came back, late, from the Hyacinth garden,
Yours arms full, and your hair wet, I could not
Speak, and my eyes failed, I was neither
Living nor dead, and I knew nothing,
Looking into the heart of light, the silence.
*Oed’ und leer das Meer.*

Վարան Ոյժի մօտ ասիկա վերածուած է.

*«Յակինթներ տուիր ինծի տարի մը առաջ,*
*Յակինթի աղջիկը կոչեցին զիս»:*
*Պարտէզին մէջ էինք ուրեմն*
*Ելած էիր յետոյ պարտէզէն դուրս*
*Հեռացած էիր ինծմէ ու լքած զիս*
*Յակինթներն առնելով քեզի հետ*
*Յիշատակ իբրեւ բայցեւայնպէս*
*Եւ երբ հմայուած մատչեցան քեզի*
*Շնորհակալ եղա՞ր սրտիդ խորերէն*
*«Բայց երբ դարձար ետ, ուշ, Յակինթի պարտէզէն,*
*Թեւերդ լի, եւ մազերդ թաց, չկրցայ*
*Խօսիլ, եւ աչքերս դաւաճանեցին, չէի ոչ*
*Ողջ ոչ մեռած, եւ ոչինչ գիտցայ,*
*Նայելով խորքը լոյսին, լռութեան»*

Էլիոթի մօտ անորոշ աղջիկ մըն է խօսողը՝ «Յակինթի աղջիկը», Ոյժի շարադրութիւնը, բնականաբար, նոյնը պիտի ակնարկէր: Երկու պարագաներուն կը գտնուի մելամաղձութիւն եւ կորսուած սէր: Էլիոթ իր շարադրութիւնը կը հանգրուանէ Վակնէրի *Tristan und Isolde* օփերայի նախադասութեան՝ «Oed’ und leer das Meer» (Ծովն է ամայի ու դատարկ): Ոյժի ելակէտը տարբեր է: Ան կ’ուզէ ոչ թէ «փաստել» յակինթի մելամաղձութիւնը, այլ հարցադրել՝ արդեօ՞ք ասիկա բանաստեղծութիւն է: Եւ այսպէս կը սկսի բանաստեղծութեան մասին իր մտոլորումները:

Վարան Ոյժ քաղուածք մը կատարած է Եղիշէ Չարենցի անվերնագիր բանաստեղծութենէ մը՝ որ կը սկսի «...Ճիշտ այսպիսի անգոյն մի գիշեր» տողով[9] եւ կը վերաբերի Լէոնարտօ տա Վինչի – Պելդրաֆիոյ հատուածին: Ոյժ անկէ քաղած է քանի տող, քանի մը միտք եւ իր կողմէ աւելցուցած խօսուն Ես-ը, որուն մասին վերը ակնարկեցի:

Սոցիալիստական ռէալիզմի մասին Մաքսիմ Կորքի գրած է.

«Սոցիալիստական ռէալիզմը հաստատում է կեցութիւնը՝ որպէս գործունէութիւն, որպէս ստեղծագործութիւն, որի նպատակը մարդու արժէքային անհատական ընդունակութիւնների անընդհատ զարգացումն է՝ յանուն բնութեան ուժերի դէմ նրա յաղթանակի, նրա առողջութեան եւ երկարակեցութեան, յանուն երկրի վրայ ապրելու մեծ երջանկութեան, երկիր, որ իր պահանջների շարունական աճին համապատասխան՝ ցանկանում է դառնալ մարդկութեան հիասքանչ բնօրրան՝ բոլորին միաւորելով մէկ ընտանիքի մէջ»։[10]

Ոյժի մօտ ան ստացած է հետեւեալ կերպարանքը.

*«Անընդհատ զարգացումը Մարդու*
*Ամենաարժէքաւոր անհատական կարողութիւնների,*
*Յանուն նրա յաղթանակի բնութեան ուժերի դէմ,*
*Յանուն նրա առողջութեան ու երկարակեցութեան,*
*Յանուն երկրի վրայ ապրելու նրա մեծ երջանկութեան»*

Մինչդեռ Կորքի, բնականաբար, շատ լուրջ է իր համոզումներուն մէջ, Ոյժ հեգնանքով կը ներկայացնէ նոյն գաղափարը, փորձելով ցոյց տալ անոր պատկերաւոր թեւածումը (տե՛ս ստորեւ)։

Ուրիշ քաղուածք մը ամբողջութեամբ անգլերէն է՝ լատինատառ։ Andrew Marvell-ի *The Garden* բանաստեղծութենէն ամբողջական հատուած մըն է, որմէ ետք Ոյժ իր կողմէ կ՚աւելցնէ վերջին վեց տողերը՝ միշտ անգլերէն, ուր ինքզինք խօսակից կը դարձնէ Մարվըլլին՝ ուղղակիօրէն դիմելով անոր։ Այստեղ Ոյժ կը փորձէ բանաստեղծական դասական ու շատ ծանօթ օրինակով մը քանդել բանաստեղծութեան ինչքութիւնը, դառնալ ծանօթ դասական բանաստեղծութեան մը հեղինակակիցը, կարծէք փորձելով խորտակել հեղինակային մենատիրութիւնները։

Ասոր գրեթէ անմիջապէս կը յաջորդէ Ռաֆայէլ Պատկանեանի *Խնձոր ծախող Աստուածատուրը* պատմուածքէն[11] քաղուածք մը, որ միաժամանակ կը հանդիսանայ *Յակինթի պարտէզը* բանաստեղծութեան վերջնաւարտը։ Քաղուածքով կ՚աւարտի բանաստեղծութիւնը։ Հետաքրքրական է, որ Պատկանեանի արձակը Ոյժ կը վերածէ չափածոյի՝ առանց բնագիրէն բառ մը փոխելու, այլ պարզապէս դասակարգելով բանաստեղծական տողերը։ Այս հատուածը ըլլալով բանաստեղծութեան ինքնութիւնը բանաստեղծութեամբ մեկնելու, կամ բանաստեղծութեան միջոցով բանաստեղծութեան ինչքութիւնը կասկածի տակ դնելու միտքին աւարտը, Ոյժ հաւանաբար ուզած է առաջ մղել արձակի մը բանաստեղծականութիւնը եւ բանաստեղծութեան մը արձակայնութիւնը, մերժելով սեռային (ժանրային) սահմանները եւ արհեստական ստորաբաժանումները, հետեւա-

բար՝ մերժելով բանաստեղծութեան մը ինքնութիւն-ինչքութիւնը իբրեւ այդպիսին։

Կան աւելի մանր քաղուածքներ։ Օրինակ՝ «Լքէ՛ ինչ որ ունիս եւ միացի՛ր մեզի» նախադասութիւնը *Յակինթի պարտէզ*ին մէջ, որուն նպատակն է յիշեցնել Յիսուսի խօսքերը՝ «Ո՛վ որ ուզէ գալ իմ ետեւէս, թող ուրանայ ինքզինք»,[12] անշուշտ երգիծային մօտեցումով մը։

Ինչո՞ւ քաղուածքը միայն գրական-բանաստեղծական պէտք է ըլլայ եւ հիմնուած պաշտօնապէս տպագրուած բնագիրի վրայ։ Յայտարարութիւններ, ազդեր եւ այլ ոչ-գրական գրութիւններ եւս կը կազմեն մեր գիտակցութեան եւ յիշողութեան կարեւոր մասը։ Օրինակ, Վարան Ոյժի Ես-ը կ՚այցելէ բանաստեղծի մը տուն-թանգարանը (երբեք տուն-թանգարան եզրը չէ օգտագործուած), ուր հիւրընկալող տիկին մը կ՚ըսէ իրեն. «Ամէն օր բաց ենք մենք / Ճիշդ նշուած ժամերուն»։ Ասիկա ցուցատախտակային նախադասութիւն մըն է՝ որ կը տեղադրուի թանգարաններու դուռներուն վրայ. «Թանգարանը բաց է այսինչ օրերը, այսինչ ժամէն այնինչ ժամը»։

Այսպէս, քաղուածքը՝ իր տարաբնոյթ ընկալումներով, կը հանդիսանայ *Յակինթի պարտէզ*ին խօսուն բաղադրիչներէն մէկը։

## ԺԱՄԱՆԱԿ

Հաստատակամ-հաստատական ժամանակը չի հետաքրքրեր բանաստեղծին։ Ան ինքզինք կը գտնէ ժամանակներու ընդմէջէն.

*Կասկածոտ կը նայի կարճ, կարճատես ծերն*
*Սակայն իսկոյն բերնէն Թափթփեցան բառեր*
*Տարինե՜ր խօսելէ զրկուած էր կարծես*
*Կը քաշկռտէր մեզի այս կամ այն չիրիմին։*

Գործողութիւնը տեղի կ՚ունենայ սահմանական ներկայի («կը նայի»), անցեալ կատարեալի («թափթփեցան») եւ անցեալ անկատարի («կը քաշկռտէր») միջեւ։

Մէկ նախադասութեան մէջ՝ միեւնոյն գործողութեան համար, օգտագործել բայերու երեք եղանակներ, չի տեղաւորուիր ընդունուած քերականութեան սահմաններուն մէջ։ Բայց երեք եղանակներու գործածութիւնը բնաւ հակառակ չ՚ընթանար քերականութեան, ոչ ալ հակա-քերականական նկրտումներ ունի, այլ, ընդհակառակը, ան մեծապէս ներթափանցուած է քերականութեամբ։ Առանց ըմբռնողական քերականութեան կարելի չէ հասկնալ՝ որ այստեղ բանաստեղծին ժամանակը սահման չունի եւ թուականներ չի ճանչնար։ Մինչդեռ դպրոցական

քերականութիւնը մեզի կը սորվեցնէ՝ որ ժամանակը փակ է, սահման ունի (չես կրնար մէկ գործողութիւն մը միաժամանակ տեղադրել թէ՛ անցեալի եւ թէ՛ ներկայի մէջ) եւ կը պարտադրէ մեզի պաշտել թուականները։

*Յակինթի պարտէզը* իր ամբողջութեան մէջ կը մերժէ ժամանակին կայունութիւնը, սահունօրէն կ'անցնի անցեալէն ներկան, ներկայէն անցեալը, այլեւ զանոնք կը դնէ քով քովի։

## ՓՈՐՁ ԿԱԶՄԱԼՈՒԾՈՒԹԵԱՆ

Աւելորդ չեմ նկատեր կատարել կազմալուծութեան (deconstruction) փորձ մը, որսալու համար որոշ իմաստներ։ Իբրեւ նմոյշ կ'ընդունիմ երկրորդ բանաստեղծութիւնը՝ «Գիրքին հեղինակութիւնը»։

Այստեղ կարելի է մատնանշել քանի մը կառոյց՝ գերեզմանատան մէջ գտնուող մատուռը, ցանկապատը եւ շիրիմները, եւ բանաստեղծի մը տուն-թանգարանը («տուն-թանգարան» բառը չէ գործածուած բանաստեղծութեան մէջ, բայց կայ անոր ակնարկումը)։ Ուրեմն, երկու տարածութիւն՝ գերեզմանատուն եւ տուն-թանգարան։ Բայց տարածութիւններէն աւելի կառոյցներն են որ կը խօսին։

Հիւրընկալութեան վայր մըն է գերեզմանատունը, որ երբ դադրի հիւրընկալելէ կը դառնայ ամայի եւ կը լեցուի խոպան ծառերով.

*Ամայի՜ է այլեւս գերեզմանատունն*
*Որ անցեալին ծաղկուն էր ու Հիւրընկալ*
*Շիրմաթումբեր խոպան ու կմա՛խք ծառեր։*

Մատուռը հին հայկականութեան խորհրդանիշն է, անիկա սուրբ է։ Բայց արդեօք ի՞նչ զոհացում կրնայ տալ հին մատուռի շէնք մը.

*Վճռած ենք գտնել Հին Հայկական մատուռն*
[...]
*Եւ ոչ մէկ Հետք մեր փնտռած մատուռէն*
*Որ չեմ գիտեր պիտի տար ի՞նչ գոՀացում։*

Ցանկապատը այն ուղիղ գիծն է՝ որուն եթէ մարդը անսասանօրէն հետեւի, կը գնահատուի ու կը վարձատրուի հասարակութեան կողմէ։ Բայց նաեւ մարդը ատակ է քանդել ցանկապատին յարուցած պատնէշը՝ գործելու համար ոտնձգութիւններ (ազատագրուելու համար).

*(Այս ցանկապատն որ կ՚երկարի ո՞ւր արդեօք կը տանի
Ի՞նչ լիացնող վարձատրութիւն կը սպասէ
Յարատեւող անձին՝ անսաստ ու անսասան)*
[...]
*Բայց ցանկապատն անցատկելի պատնէշ չէ
Եւ արտօնուած է մեզի ոտնձգումն։*

Արդարեւ, բանաստեղծին համար յատուկ նշանակութիւն կը ստանայ շիրիմը։ Պատգամներ կ՚արձակեն շիրիմները. կայ մեծահարուստին շիրիմը՝ «ինչպէս տեղին մեծութիւնը կը վկայէ», գրոց-բրոցին շիրիմը՝ «զի խոր խրատ ունի տալիք այցելուին», եւ ընդհանրապէս շիրիմներու վրայի գրութիւնը «Իր պատգամը կը փաստէ թէ է՛ այնքան իմաստուն»։ Այդ իմաստութիւնները իրական են որքան ժամանակ որ իրական է գերեզմանատունը, ուրեմն՝ որքան ժամանակ որ կենդանի է մահը իր նիւթական գոյութեամբ։ Եւ անդրիները՝ որոնք գովերգութիւններ արտասանելու տրամադրութիւններ կը յառաջացնեն առաջնորդներուն մօտ, կարծես փոխարինումները ըլլան մարդկային դէմքին, դիմագիծին ու գործունէութեան։

Շիրիմը կը թուի նմանիլ բանաստեղծի մը տուն-թանգարանին, երկուքն ալ պատգամներ կու տան մեռած մարդոց մասին։ Երկուքն ալ գիրի ու գրականութեան փոխանորդներ են, որոնք կը գտնուին ցանկապատի ուղիղ գիծին շարունակական կողմերը։

## ՓՈՐՁ ՏԻԱԼԵՔԹԻՔԻ

*Յակինթի պարտէզին* տիալեքթիքը հեկէլեան չէ։ Անոր գաղափարները չեն ձգտիր իրենք իրենց մէջ զարգանալու ու փոխուելու, չեն կրնար յարմարուիլ դրոյթ, հակադրոյթ, համադրոյթ երրորդութեան։ Ոչ ալ պղատոնեան տիալեքթիքին կը նմանին, ուր Սոկրատէսին գաղափարը բոլորէն վեր է ու վեհ։ Ոչ ալ Ատորնոյի բացասական տիալեքթիքն է, ուր Լուսաւորութիւնը կրնայ վերջանալ Ողջակիզումով։ Այլ տիալեքթիք մըն է գաղափարներու ընդմէջէն, առանց ունենալու կեդրոնական գաղափար մը, կամ ունենալով բազմակի կեդրոններ, առանց անպայմանօրէն գաղափարներու յաջորդականութիւնը միտքի պարտաւորութիւն մը դարձնելու՝ դարձեալ քիչ մը նման տըլէօզեան անկեդրոն տարբերակումին։

«Էականն ու զարտուղին» բանաստեղծութեան մէջ պիտի փորձեմ որսալ այդ տիալեքթիքը, ես ինքս ձգտելով տիալեքթիքի մէջ մտնել անոնց հետ։

«Ե՛ս էի նստած՝ կարդալու Marquis de Sade», կը սկսի բանաստեղծութիւնը։

Բանաստեղծը զայն կարդացած է ֆրանսերէն լեզուով, ինչպէս ենթադրել կու տայ անունին լատինատառ յիշատակումը եւ ինչպէ՞ս պիտի յուշէ քանի մը տող ետք մէջբերած ֆրանսերէն բառ մը։ Մարքի տը Սա՞տ։ ԺԹ. դարու ֆրանսացի փիլիսոփայ գրող մը, որ, ի միջի այլոց, ծանօթ է իր ազատական սեռականութեամբ եւ էրոթիզմով։ Հայերը պիտի ըսեն՝ «անբարոյականութեամբ»։

Փորձեցի Մարքի տը Սատի գիրքերուն հայերէն թարգմանութիւններ փնտռել՝ չգտայ։ Հայաստանի մէջ 1920-2010 թուականներուն տպագրուած թարգմանական գրականութեան մատենագիտութեան երկու հատորներուն մէջ չկայ Մարքի տը Սատ։[13] Եգիպտոսի[14] եւ Լիբանանի[15] հայերէն գիրքերու մատենագիտութիւններուն մէջ կը բացակայի իր անունը։ Կարելի է հանդէսներու եւ պարբերականներու մէջ տպագրուած ըլլան անկէ քաղուածքներ։ Տեղեակ չեմ։ Բայց թարգմանուած գիրք չկրցայ գտնել։ Եւ յանկարծ *Գրահաւաք* թուայնացուած հայերէն գիրքերու գրացուցակին մէջ[16] հանդիպեցայ հայերէն «Մարկիզ դը Սադ» անունին։ Հետեւեցայ համացանցային կապին, ներբեռնեցի գիրքը։ Խորագիրն էր՝ *Կանժի մարքիզուհին*, տպագրուած Պոլիս, 1858-ին, թարգմանութեամբ Խ. Յ. Կիւմիւշեանի։ Բարեբախտաբար տեղեկութիւնը սխալ էր եւ անիկա Ալեքսանդր Տիւմայի գործին թարգմանութիւնն էր եւ ոչ թէ տը Սատի (երկուքն ալ նոյն խորագիրով վէպեր գրած են)։ Յոյսով եմ *Գրահաւաք*ը կը սրբագրէ իր սխալը, հայ ժողովուրդէն հեռու պահելով ամէն տեսակ անբարոյականութիւն։

Այսքա՞ն անբարոյակա՞ն է որ չկրցանք Մարքի տը Սատէն ամբողջական գիրք մը թարգմանել։ Վերջերս *Գրական կամուրջ* կայքէջը Գառնիկ Մելքոնեանի թարգմանութեամբ տեղադրեց տը Սատի երեք կարճ պատմուածքներ[17] իսկ *Գրքամոլ.am*-ը թարգմանեց փիլիսոփայական քանի մը քաղուածքներ։[18] Այս վերջինին մէջ, օրինակ, կրնանք կարդալ. «Ամենափրկիչը Երկիրը ստեղծեց իր համար, իսկ մեզ՝ իրեն հպատակուելու...», կամ «Կին չեն ծնւում... Կին դառնում են ամուսնանալով», կամ «Հեռացրէք հոգեւորականներին ու ծածկոցն էլ նրանց հետ կը բացուի»։

Կարելի է ուրիշ ասոյթներ եւս քաղել *Փիլիսոփայութիւն ննջասենեակի մէջ* գիրքէն, զորս կը ներկայացնեմ իմ թարգմանութեամբ. «Անառակ կինե՛ր, հեշտասէր [Տիկին] Սէնթ-Անժը ընդունեցէք իբրեւ ձեր տիպարը։ Հետեւելով իր օրինակին, ուշադրութիւն մի՛ դարձնէք հաճոյքի աստուածային օրէնքները հակասող բոլոր երեւոյթներուն, օրէնքներ՝ որոնք Սէնթ-Անժի ողջ կեանքը պահեցին շղթայի տակ», կամ «Դո՛ւք՝ երիտասարդ կոյսեր, որ շատ երկար կաշկանդուած էիք տարօրինակ Առաքինութեան մը անիմաստ եւ վտանգաւոր շղթաներով եւ զարշելի կրօնքով, ընդօրինակեցէք կրակոտ Էօժէնիին։ Էօժէնիին նման արագօրէն կործանեցէք եւ արհամարհեցէք բոլոր ծիծաղելի կանոնները զորս ձեր մէջ արմատաւորած են տխմար ծնողքները»։ Արդէն կարելի է հասկնալ թէ ինչու մաքրամաքրասէր հայերը պիտի հրաժարէին տը Սատէն։ Վերջապէս, հայերը

աւելի բարոյական են քան ֆրանսացիները։

Ի՞նչ է իրապէս բարոյականութիւնը։ Պարզագոյն օրինակ մը։ Ամբողջ արդի դրամատիրական աշխարհը կ'ընդունի մարդկային ամենէն անբարոյական գործողութիւնը՝ պատերազմը։ Միջազգային բոլոր օրէնքները կ'արդարացնեն պատերազմը։ Անոնք կ'արգիլեն պատերազմի ոճիրները, բայց չեն արգիլեր պատերազմը իբրեւ ոճիր, եւ պատերազմը արդարացնելու համար կը ստեղծեն նոյնիսկ ցնորական թշնամիներ։ Պատերազմը՝ ուր անթիւ մարդիկ կը մեռնին (կը մեռնի ժողովուրդը, իսկ առաջնորդները կը մնան ողջ ու առողջ, պատերազմէն ետք համաձայնագիրներ ստորագրելու համար... ժողովուրդին համար), անբարոյական չէ, քանի որ մեռնողները ամբոխներ են՝ անանուն, անձայն ու հպատակ։ Մարքի տը Սատ՝ անբարոյական է։

Երբեք չեմ կարդացած՝ որ անբարոյականութեան անունով հետեւողական, շարունակական եւ արմատական քննադատութիւններ կատարուին հայամիջեան սպանութիւններուն նկատմամբ։ Քանակապէս բաւական աչքառու են ԺԹ.-Ի. դարերու հայ մեծահարուստներու սպանութիւնները՝ երբ հրաժարած են անորոշ առաքելութիւններու համար դրամ հայթայթել կուսակցութիւններուն, մտաւորականներու սպանութիւնները (Արփիար Արփիարեան ըլլալով լոկ մէկ օրինակ մը), գաղափարականութեան անունով ականաւոր դէմքեր ծեծելու սովորութիւնը (օրինակ՝ Վահան Թէքէեանին), դիրքային առաւելութիւններու համար միջեկեղեցական ծեծերը (Մութաֆեան Պատրիարքին ծեծը Հայաստանի մէջ 1990-ականներու վերջաւորութեան), միջհայկական անվերադարձ առեւանգումները (յիշենք Սարգիս Զէյթլեանի պարագան)։ Ճիշդ է, նշուած է անոնց մասին, կատարուած են լրագրային դատապարտութիւններ, որոշ աղմուկներ բարձրացած են անոնց շուրջ, բայց անոնք չեն դարձած համատարած ու համաժողովրդական մեղադրութեան առարկայ, ինչպէս, օրինակ, անբարոյականութիւնը, թէեւ գիտակցուած սպանութիւնը իր էութեամբ կը հանդիսանայ անբարոյականութիւններուն ամենէն անբարոյականը։ Անբարոյականութեան պատումը եղած է բացարձակ, մինչդեռ սպանութեան պատումը եղած է պարագայական։ Անբարոյականութիւնը պէտք չէ ընդունիլ՝ քանի որ ան դարձած է գաղափարախօսութիւն, մինչդեռ սպանութիւնը կարելի է ընդունիլ՝ քանի սպանութիւնն ինքնին բարոյապէս արգիլուած չէ։ Բայց *Փիլիսոփայութիւնը ննջասենեակի մէջ* գիրքին մէջ Մարքի տը Սատ կը պնդէ՝ որ եթէ անձ մը իր հաճոյական իղձին ժամանակ ոճիր ու սպանութիւն գործէ, պէտք չէ զայն օրէնքով պատժել։ Կը նմանի հայկական սպանութիւններու պարագային, ուր հաճոյական իղձը՝ արդէն ոչ էրոթիք իմաստով, գոյութիւն ունի ամենայն հաճոյակատարութեամբ։ Ուրեմն, ինչո՞ւ անտեսել Մարքի տը Սատ։ Հակառակ հայու կամ ոչ-հայու բարոյական պնդումներուն, Մարքի տը Սատէն տարրեր կը գտնուին իւրաքանչիւր անձի մէջ, տարրեր՝ որոնք բարոյականութեան անունին տակ կը ճնշուին

եւ կը սպաննուին, իսկ մարդկային բնական իղձը՝ ստեղծագործականութեան եւ յուզական ու մտաւոր թռիչքի կարեւոր բաղկացուցիչներէն մէկը, կա՛մ կը դառնայ անգործածական, կամ կ՚անցնի ընդյատակ, եւ կամ կը ֆեթիշիզացուի ու կը վերահսկուի յատուկ ծրագրուած «էրոթիք» հիմնարկներու ընդմէջէն:

Ամբողջ գաղափարախօսութիւն մըն է որ գործէ այստեղ՝ բարոյականութեան անունին տակ: «Գաղափարախօսութիւնը կը գործէ ամէնօրեայ մակարդակով», 2012-ի բանախօսութեան ժամանակ պնդած է սլովենացի փիլիսոփայ Սլավոյ Ժիժէք[19]: Այս առօրեայ գաղափարախօսութիւնն է զոր կը փորձէ քանդել Վարան Ույժ, դիմելով գոնէ հայկականօրէն արգիլուածին՝ Մարքի տը Սատին.

*Ինչ մարտ՝ բառերու դէմ, եւ ինչ աւար յայրատ*
*Սեռային ըսուած բնազդին գոհացման համար*
*Խոշտանգում, պղծում, սպաննութիւն պէս-պէս*
*Որոնցմէ ամիս մը ետք շատ քիչ բան կը յիշես:*

Շատ քիչ բան կը յիշես, բայց եւ այնպէս, գրաւիչ է յիշատակութեան համար: Բանաստեղծը կը յիշեցնէ՝ որ տը Սատի մօտ կայ բառ մը՝ gamahuché, զոր բառարաններն անգամ անտեսած են, թէեւ առանց այդ բառին ալ կարելի է հասկնալ բովանդակութիւնը («արարքը»): Զարտուղին (gamahuché) կը դառնայ աւելի էական քան նոյն ինքը էականը (էրոթիզմ), քանզի էականը «անհետեւանք ճզնանք» մըն է:

Բանաստեղծը սահման չի գծեր՝ թէ երբ կը դադրի խօսիլ Մարքի տը Սատի մասին եւ կ՚անցնի իր անձնական խմորումներուն, քանի որ այս առարկայապաշտ անցումները բնաւ կարեւոր չեն:

«Էական» թէ «զարտուղի», ամէն ինչ պատահական է կեանքի մէջ, ընդ որում պատահական է «Բաժանումը մարդկութեան՝ արու-էգի»: Էականը գոյութեան գիտակցութիւնն է, էականը անդրադարձն է «որ անհեթեթ է այդ գոյութիւնն»: Կին, էրոթիզմ, անյիշատակութիւն յիշատակութեան ընդմէջէն, էական, զարտուղի՝ որ կրնայ դառնալ էական, էականը՝ պատահական, էականը՝ իբրեւ գոյութիւն, գոյութիւնը՝ անհեթեթութիւն: «Եւ հեգնա՜նք ուրեմն»: Անշուշտ՝ հեգնանք: Հեգնանքը կամ հեգնութիւնը կարմիր թելի նման կ՚անցնի ամբողջ բանաստեղծութեան մէջէն: Հեգնանք կայ «Ճնճղուկներու վերադարձը» բանաստեղծութեան մէջ, երբ կառոյցներ կը գոյանան եւ մարդիկ կ՚երկրպագեն գոյութիւն չունեցող երեւոյթներու համար: Հեգնանք «Գիրքին հեղինակութիւնը»-ին մէջ, ուր ճառեր կը խօսուին շիրիմներու անդրիներուն մասին:

Վերադառնամ «Էականն ու զարտուղին»-ին: Հեգնանքի պատճառո՞վ է որ ջրահարսն ու կինը ոչ այնքան համերաշխօրէն կ՚ընթանան քով-քովի: Ջրահարսի եւ կնոջ միջեւ տարբերութիւնը արտայայտուած է քերականօրէն, ջրահարսերը՝

յոգնակի, կինը՝ եզակի։ Յոգնակին ընդհանրութեան մը տպաւորութիւնը կը թողու, վերջապէս ջրահարսերը առասպելականութիւն են, իսկ եզակին՝ անձնական մտերմութեան ու կիրքի, վերջապէս կինը իրական է։ Բայց արդեօ՞ք իրական է բանաստեղծութեան կինը։ Անիկա կրակներու մէջ կ՚այրի բայց չի վառիր, իր մարմինը մի՞ս է թէ մետաղ, «Կոթո՞ղ հրաշագործ, տոչորող է՞գ»։ Ինչպէս ջրահարսերը՝ որոնց «մէջքէն վար ձուկ է», կինը կ՚անշարժանայ պատուանդանին վրայ։ Կը դառնայ կոթո՞ղ։ Ինչո՞ւ այդպէս պիտի ըլլար։ Կինն է որ իր ձեռքով այդպէս ըրաւ.

*Իբրեւ բողոք կեղեքման դէմ ամբողջատէր*
*Սահմռկելի այդ աւարտն էր կինն ընտրած։*

Կրնայ ըլլալ դիմադրելու համար Մարքի տը Սատին։

Բայց բանաստեղծին համար կնոջ մարմինը իրական է՝ տեսանելի, շօշափելի ու յանձնուող, անիկա թէ՛ էական է, թէ՛ զարտուղի, թէ՛ զմայլելի։

Կնոջ յանձնուող մարմինին նման բանաստեղծը *իր* մարմինը կը յանձնէ նկարիչին՝ փոխարէնը դիմանկար մը ստանալու համար, որովհետեւ «Պիտի սիրենք որ ուրիշներ ալ դիտեն»։ Եւ քանի որ իր դիմագիծը պիտի ներկայացուի ուրիշի դատողութեան, ան պէտք է ըլլայ հրաշք յայտնութիւն։ Տարօրինակ է։ Մարդ տակաւին ինք իրեն չյայտնաբերած, կ՚ուզէ որ ուրիշը՝ նկարիչը, յայտնաբերէ իր դիմագիծը.

*Կը խրտչիմ ինքնակոչ նկարիչէն - եւ ո՞վ*
*Կարող է ներսիդիէս յայտնաբերել*
*- Եթէ երբեւէ - ինծի անծանօթն*
*Մինչ ես դիմանկարս չեմ աւարտած դեռ։*

Բանաստեղծը այստեղ հրաշալիօրէն կ՚արտայայտէ արդիական մարդու անվերջանալի բարդոյթը՝ դիտուելու եւ գովաբանուելու կիրքը, իրերը դուրսէն դիտելու եւ արժէքները արտաքին գրգիռներէ որակաւորելու ձգտումը։ Մարքի տը Սատի կիներու մարմիններուն նմա՞ն արդեօք։

«... Ճիշդ այսպիսի անգոյն մի գիշեր», Լէոնարտոյ տա Վինչի կը դիմէ իր աշակերտ Պելդրաֆիոյին, Յիսուսը նկարելու համար։ Պելդրաֆիոյ հանդէս պիտի գար իբրեւ բնորդ՝ Յիսուսի փոխարէն։ Եւ ան եւս մտահոգուած է Վարան Ոյժի նման։ Տա Վինչիի վերջացած կտաւը, հետեւաբար, կը պարունակէ Յիսուսը, Պելդրաֆիոն եւ բանաստեղծը («Ես»)։

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ՝ ԻՆՉՔՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԻՆՉՔԱԶՐԿՈՒԹԻՒՆ

Առաջին հայեացքէն կը թուի՝ թէ Վարան Ոյժ բանաստեղծութեան ինչքութիւնը կը փորձէ բացատրել։ Սակայն աւելի հաւանական է՝ որ ան ինչքազուրկ կ՛ընէ բանաստեղծութիւնը, ձգտելով զայն դուրս հանել սահմանումներու սովորամոլութիւններէն եւ մտցնել կարելիութիւններու ցանցին մէջ.

*Այնքան լայն է բանաստեղծի աշխարհն*
*Որ չհասկցողն ալ իր տեղն ունի։*

Չհասկցո՞ղը։ Չէ՞ որ «չհասկցող»-ները տեղ չունին արդի փրոֆեսիոնալ-աքատեմիք աշխարհին մէջ։ Ուրեմն, բանաստեղծը կ՛ակնարկէ՝ որ ինք մաս չի կազմեր այս կարծրացած աշխարհին։ Եւ եթէ մաս չի կազմեր, ի՞նչպէս կրնայ բանաստեղծութեան ինչքութիւնը բացատրել, բացատրութիւն մը՝ որ կը հանդիսանայ ակադեմականներուն սեփականութիւնը։

Ի՞նչ է բանաստեղծութիւնը. «Ապրուած պա՞հը», կամ «փորձը զայն թուղթի վրայ ժողվելու», կամ երբ բառերու միջոցով «որոշենք, ապացուցենք որ» եղածը բանաստեղծութիւն է, կամ երբ բառերու միջոցով պահը վերածենք «ամբողջական, այլամերժ, անթերի» պատկերի, կամ պահը որ պատկեր չէ «այլ պատրանք միայն»՝ իսկ այս փոփոխուող պատրանքէն «ինչ որ յաջողիս անշարժացնել/Հպումովդ» կը դառնայ բանաստեղծութիւն, կամ «եղծում» բառերու, կամ «Յակինթի պարտէզ»-ն է՝ որ «միշտ կը յուշէ/Որ բանաստեղծ եմ», կամ բոլոր արուեստներուն նման «ցնծութիւն է յաւերժ», «Թէ՞՝ բանաստեղծութի՛ւնն է միայն որ կրնայ/Տարածել սահմաններն բանաստեղծութեան», «Թէ՞ բանաստեղծն է ամենակարող/Եւ որեւէ բան որուն դառնայ/Բանաստեղծութիւն է արդէն»։

Վարան Ոյժ ինչքազուրկ ընելով բանաստեղծութիւնը, զայն հեռացնելով սեռային (ժանրային) ու ոճական «առանձնայատկութիւններու» ճնշումներէն, հարցումներու միջոցով բանաստեղծութեան մը կարելիութեան մասին է որ կ՛ուզէ մտորիլ։

## ԲԱՌԱ-ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Միեւնոյն բառին եւ նմանահունչ բառերու կրկնութիւնը մասնաւոր իմաստներ կրնան արտայայտել։

*Արուեստի գործ մը ցնծութիւն է յաւերժ*
*Ձկարենաս Թէեւ յաւերժանալ առջեւն։*

Նկատելի է «յաւերժ» բառին կրկնութիւնը։ Ցնծութիւնը յաւերժ է, մարդը՝ ոչ։ Յաւերժանալու իղձով մարդը ցանկութիւն ունի միանալու արուեստին հետ ոչ միայն իր ստեղծած գործին մէջ, այլ, ըսենք, տա Վինչիի *Վերջին ընթրիքին* մէջ։ Բայց արուեստը աւելի առաջ է քան մարդը, անոր մէջ գտնուող ցնծութիւնը յաւերժ է, արուեստը կեանքի կոչող արուեստակիրը կամ արուեստակիցը՝ ոչ։ Ֆուքոյական հեղինակային մա՞հն է որ կը գործէ այստեղ։ Թէ՞ պարզապէս հեգնանք մըն է յաւերժութեան հանդէպ, յաւերժութիւն մը որ կրնայ յաւերժ չըլլալ։

Ահաւասիկ ուրիշ հատուած մը.

> *Եւ վերջապէս ի՞նչ է բանաստեղծութիւնն*
> *Ինչ որ այսօր բանաստեղծական կը նկատուի*
> *Բռնազբօսիկ է վաղն ու ծանրաքարշ*
> *Ինչ վախազդու բան է բանաստեղծութիւն գրել*
> *Եւ ի՞նչպէս ձերբազատուիլ բանաստեղծականէն։*

Երկու անգամ բանաստեղծութիւնն ու բանաստեղծականը կը կանգնին դէմ յանդիման։ Ի՞նչ է բանաստեղծականը։ Արդեօ՞ք ան գործածուած է բուն բանաստեղծութեան իմաստով թէ փոխաբերական իմաստով իբրեւ գեղեցիկ, պատկերաւոր, գրաւիչ (գործածած ըլլալու համար Հրաչեայ Աճառեանի բառերը),[20] որ կրնայ վերաբերիլ որեւէ երեւոյթի (բանաստեղծական է լուսինը, երաժշտութիւնը, բնութիւնը, մարդը, ինչպէս նաեւ նոյն ինք բանաստեղծութիւնը)։ Երկու իմաստներն ալ ներյատուկ են վերոբերեալ հատուածին, երկուքն ալ մասնաւոր շերտաւորումներ կու տան բովանդակութեան։ Իսկ երկուքին միաժամանակեայ գոյութիւնը կրնայ մտցնել հաճելի բազմիմաստութիւն մը։ Ի՞նչպէս կարելի է բանաստեղծութիւնը (դրական) ձերբազատել բանաստեղծականութենէն (բացասական)։ Եթէ նկատի առնենք բանաստեղծութեան ձերբազատումը բանաստեղծականութենէն, ուրեմն պիտի հասկնանք որ իրական բանաստեղծութիւնը պէտք է ձերբազատուի դասագրքային բանաստեղծութեան կանոններէն ու սահմանափակումներէն՝ վանկ, գեղագիտական հմայք, թարմ խօսք, լեզուական բիւրեղութիւն, եւ այլն։ Եթէ նկատի առնենք բանաստեղծութեան ձերբազատումը պատկերաւորութենէն, ուրեմն պիտի հասկնանք ձերբազատումը վերացական խօսքերէ, ինք իր մէջ սպառող գեղեցիկ բառերէ, կեանքի ու քաղաքականութեան հետ կապ չունեցող հիմնադրոյթներէ։ Բայց կայ նաեւ «վախազդու» բառը, որ կրնայ մղել վերանայիլ այս բոլորը...։

## ՀԵԳՆԱՆՔ

> *Խնդա՛լ պէտք է, լոկ խնդա՛լ – տըղաս խորհուրդ կուտայ ինձ –*
> *Մարդոց վըրայ՝ որ ատո՛ր են միմիայն արժանի.*

կը գրէ Վահան Թէքէեան Երուանդ Օտեանի մահարձանի բացումէն ներշնչուած։[21] Բայց պայմանով մը.

> *Ինչ որ կը յատկանշէ Օտեան՝ իր «զոհերուն» վրայ կը նայի բարձրօրէն, փիլիսոփայական նայուածքով մը եւ ներողամիտ քմծիծաղով մը։ Իր երգիծանքը ազնուական բան մը ունի իր մէջ։ Ասո՛ր համար է որ Օտեանի գրիչը սիրուած է ամենքէն ու թշնամիներ յարուցած չէ իր դէմ։*[22]

Գրական հեգնանքը միջոց մըն է քանդելու ուղղափառ եղանակներն ու մօտեցումները, իսկ հայկական բիւրեղապաշտութեան համար ի՞նչ կրնայ աւելի անըմբռնելի ըլլալ քան տեսնել փայփայուած ուղղափառութիւններուն անէացումը։ Բաց աստի, հեգնանքը աւելի արդիւնաւէտ կրնայ դարձնել քննադատութիւնը, իւրայատուկ քննականութիւն մտցնելով քննադատութեան մէջ։ Երբեմն հեգնանքը լաւագոյն միջոց մըն է ծածկուած արտայայտութիւններով արծարծելու քաղաքականապէս արգիլուած դրոյթներ կամ հասարակականօրէն թապու երեւոյթներ։

*Յակինթի պարտէզը* հեգնական բանաստեղծութիւն չէ իր հիմնական ուղղուածութեամբ, բայց այստեղ-այնտեղ դժուար չէ որսալ հեգնական կարեւոր առոգանումներ։

Հեգնական գրականութիւնը ընդհանրապէս սիրելի է Վարան Ոյժին։ *Հայերէն blogh* թատերգութիւններուն կարեւոր մասը հեգնանք է գաղութահայ վերնախաւային բարքերուն, ուր *Զահակիր*ը դարձած է *Յաւակիր*, *Յուսաբեր*ը՝ *Անյոյս Բերդ*, *Արեւ*ը՝ *Նոր Աւեր*։

*Յակինթի պարտէզ*ի «Գիրքին հեղինակութիւնը» բանաստեղծութեան մէջ, օրինակ, գաղութին մէկ պատասխանատուն երկար ճառ մը խօսի Սիրանոյշի շիրիմին վրայ տեղադրուած անդրիին առջեւ.

> *«Անդրին որ կը տեսնէք՝ սպիտակ գեղեցկուհին*
> *Զգլխած էր իր ճայնով ամբողջ աշխարհին*
> *Ամէն գիշեր ծաղիկներու տարափ էր*
> *Կը մնար ինք անմատչելի Սիրանոյշ», եւ այլն։*

Սեւեռուն հեգնանք մը կայ, զոր կարելի է հասկնալ տարբեր առումներով.

ճառասացը՝ որ ենթակային բարեմասնութիւնները կը յիշէ ներշնչուելով շիրիմի անդրիէն, այլապէս գաղափար անգամ չունի անոր գործունէութեան մասին. ճառը՝ որ կը մնայ ճառ, անկէ անդին անցնելու ոչ մէկ մտադրութիւն ունենալով. շիրիմին առջեւ հաւաքուած մարդիկ՝ որոնք կը ձանձրանան ճառասացի խօսքերէն բայց քաղաքավարութիւնը կը մղէ անոնց մնալ անձայն:

Աւելին: «Աստանդական» (բանաստեղծին օգտագործած բառն է) ճառասացը, որ կ՚երգէ կնոջ բարեմասնութիւնները.

*«Կը դիտեմ ես ալ միշտ, ու միշտ ալ կը զմայլիմ*
*Ա՜հ, ինչ երկար վիզ, վէս երես, անուշ աչք»:*

Հակասութիւն մը ճառասացին վերագրելի աստանդական կեանքին եւ իր արտասանած խօսքին միջեւ: Արդեօ՞ք գործի ու խօսքի օտարացումը ընդհանրապէս արդի մարդուն յատկանիշը չէ դարձած:

Վերցնենք «Հայր իմ որ յերկրի ես» բանաստեղծութիւնը, շրջանցելով խորագիրի հեգնական ակնարկը: Այստեղ, մէջբերելով իշխանական դասակարգի առաջ նետած նշանաբանները՝ որոնք կեղծ են իրենց խորքով եւ գեղեցիկ իրենց արտաքինով, բանաստեղծը հեգնած կ՚ըլլայ ամբողջ համակարգի մը դիմակաւոր դէմքը.

*Օրինակ՝ Անընդհատ զարգացումը Մարդու*
*Ամենաարժէքաւոր անհատական կարողութիւնների,*
*Յանուն նրա յաղթանակի բնութեան ուժերի դէմ,*
*Յանուն նրա առողջութեան ու երկարակեցութեան,*
*Յանուն երկրի վրայ ապրելու նրա մեծ երջանկութեան:*

Այս բոլորին ժողովուրդը պարտաւոր է այո ըսել, թէեւ գիտէ որ սուտ է, «Բայց ըսուածն ըսենք սուտ չէ այլ գեղեցի՜կ»: Գեղեցկացած նշանաբաններ են զորս մեզի կը ներկայացնեն քաղաքական գործիչները: Ճիշդ այնպէս, ինչպէս խորամանկ առաջնորդները կը ներկայանան բարի դէմքով.

*Յետոյ սակայն Ֆարուք, Այզընհաուըր, Թալէաթ*
*Եւ անհաշիւ ուրիշներ՝ նոյն խեղ ցեղէն*
*Նոյն խորամանկ, խորագուարթ աչքերն*
*Որ աւելի բարութիւն է որ կը մատնեն:*

Նշանաբաններ ու գործիչներ՝ որոնք նման են իրարու, մէկ կողմէ՝ սուտ ու խորամանկ, միւս կողմէ՝ գեղեցիկ ու բարի: Իրականութիւն/պատրանք հեգնա-

կան երկուութիւն մը, որ հիմք կը ծառայէ ազատութիւններու կաշկանդումին.

*Յետոյ ազատ ձգեցին մեծ պարտէզի մը մէջ*
*Շուրջերնիս ծառ ու ծաղիկ, աղբիւր ու առու:*

Նախապէս ազատ չէինք, ազատ չենք նաեւ հիմա, բայց անազատութիւնը զարդարուած է գեղեցիկ բնութեամբ՝ դրախտով, որ կը ստեղծէ ազատութեան պատրանքը.

*Ազատութիւն չկայ. բացարձակ բռնատիրութիւն է*
*Նշմարեցիք անշուշտ ըսի՝ Յետոյ ազա՜տ ձգեցին...*
*Կալանուած է որովհետեւ ժողովուրդը... վախով*
*Եւ դրախտը մեզի հրամցուած... խաբուսիկ է*
*Առանձնաշնորհեալներու համար միայն ու... հիւրերու:*

Ահաւասիկ «Հայր իմ որ յերկրի ես»-ին աւարտը.

*Ինչո՞ւ պախարակել նախամարդը*
*100ը հազիւ համրելուն համար*
*Երբ Ֆրանսուա՝ Ֆրանսայի նախագահը*
*(Ժողովրդավար այս մէկն՝ երբ կը գրեմ հիմա)*
*Կը նշէ հասած է 78ի*
*Կը հաստատէ համե՛ստ պէտք է ըլլալ*
*(Ինչ անիրաւ, զրպարտո՛ղ են մարդիկ*
*Այսքան տարի՝ 14, 2 շրջան*
*Պիտակելով զինք հպարտ, ամբարտաւան*
*Ահա գլուխ կը ծռէ մահուան դիմաց)*
*Զ՚ըսեր որ կ՚ուզէ զինք ժողովուրդը*
*Զի չափազանց կիրթ է, փափկանկատ*
*Ա՛լ կը հրաժարի հանրային գործէ*
*Զի դներ՝ 3րդ անգամ թեկնածութիւնը:*

Իւրաքանչիւր տող, իւրաքանչիւր բառ հեգնանք մը կը պարունակէ՝ իր մէջ թաքցնելով խաչաձեւող իմաստներ:

Նախամարդը կը սիրենք պախարակել իր տգիտութեան համար քանի որ 100-էն աւելի համրել չէ գիտցած, մինչդեռ 100 համրելը բաւարար է ժամանակակից «ժողովրդավարութիւն»-ը ներկայացնող Միթերանի 78 տարեկան հասակը գիտնալու համար: Ծածուկ իմաստ մը կարելի է գտնել այստեղ: Նախամարդն ու ժամանակակից մարդը համեմատութեան մէջ կը մտնեն, առերեւութապէս

ժամանակակիցը դառնալով ժողովրդավար, ուրեմն՝ լաւ ու բարի, իսկ նախամարդը դառնալով ժողովրդավարութեան մասին գաղափար անգամ չունեցող զանգուած մը, ուրեմն՝ վատ ու չար: Կը մնայ ըմբռնել ոճին հեգնական կողմը, հասկնալու համար որ բանաստեղծը ճիշդ հակառակը կ'ուզէ ըսել, քանի որ պատրանք մըն է ժամանակակից ժողովրդավարութիւնը: Ապա, Միթերան 78 տարեկան է՝ 14 տարի Ֆրանսայի ժողովրդավար նախագահ, եւ տակաւին կը խօսի համեստութեան մասին, մինչդեռ անիրաւացիօրէն զայն կը պիտակեն հպարտ եւ ամբարտաւան: Դարձեալ բառերուն հակառակ իմաստն է որ պէտք է նկատի առնուի քանզի ի՞նչպէս կրնայ 78 տարեկանին իշխանութեան կառչած նախագահը համեստութիւն քարոզել:

Վերջին քառատողը ծածուկ կերպով կ'ակնարկէ Հոսնի Մուպարաքին՝ որ 1993-ին (բանաստեղծութեան յօրինումէն մէկ տարի առաջ) նախագահական երրորդ շրջանը սկսած էր, պատճառաբանելով որ ժողովուրդը այդպէս կ'ուզէ: 1994-ին անկարելի էր իր անունը յիշել, բայց 2011 Յունուար 25-ի յեղափոխութենէն ետք արդէն կարելի է որոշ փակագիծեր բանալ: Կրկնակի հեգնանք կայ այստեղ, քանի որ մէկ կողմէ կը խօսուի Միթերանի մասին՝ ուր իրեն վերագրուած «կիրթ» եւ «փափկանկատ» բառերը ճիշդ հակառակը պէտք է նշանակեն, միւս կողմէ ակնարկը կ'ուղղուի բոլորովին ուրիշ մարդու՝ Մուպարաքին: Բայց այս կրկնակի հեգնանքը՝ միացնելով երեւութապէս ժողովրդավար Միթերանը ոչ-ժողովրդավար Մուպարաքին հետ, համանման դարձուցած կ'ըլլայ երկու նախագահները եւ իրենց երկիրները: Եթէ Յունուար 25-ը ընդվզում մըն էր մուպարաքեան վարչակարգին դէմ՝ հրապարակային կերպով կարողանալով արտայայտել ու արտասանել ցկեանս միապետին բռնատիրութիւնը, միայն յառաջապահ ձախերը քաջ գիտեն՝ որ արեւմտեան լիպերալ ժողովրդավարութիւնը համակ պատրանք մըն է, քանի որ առաջնորդները արտադրութիւնն են վերնախաւային դրամատիրական շահերու ու շահոյթներու, թիկունք ունենալով լիովին վերահսկուած լրատուամիջոցները, յենարան ունենալով անդրազգային ընկերութիւններուն եւ հսկայ դրամատուններուն դրամական իշխանութիւնը: Հեգնական ոճը նաեւ կրնայ ուղենշել՝ որ Միթերան-Մուպարաք յարակցութիւնը պայմանական է, անիկա առարկայականացումն է համընդհանուր քաղաքականութեան: Եւ հաւանաբար կարելի է գտնել ուրիշ շատ իմաստներ եւս:

## ԸՆԴԴԷՄ ԱՔԱՏԵՄԻՋՄԻ

Բանաստեղծութիւններ կան որոնք իրենք իրենց մէջ կը սպառին: Անոնք քանակով շատ են, կը գտնուին դասագիրքերու մէջ, կը վերահրատարակուին

մամուլի մէջ, կ՚արտասանուին բեմերէն՝ յատկապէս Սփիւռքի աւանդական-ներու ձեռնարկներուն։

*Յակինթի պարտէզը* այն բանաստեղծութիւններէն է որ պիտի չմտնէ աքատեմի, տեղ պիտի չգտնէ դասագիրքերու մէջ։ Եւ ասիկա ի նպաստ իրեն։ Քանզի հակառակ պարագային, ան անպայմանօրէն պիտի տեղաւորուի տիրող գաղափարախօսութիւններու մէջ, պիտի յարմարուի տեսական կանխադրոյթ-ներու, որոնց ազդեցութենէն ան երբեք պիտի չկարողանայ ձերբազատուիլ։ Ասի-կա բանաստեղծութիւն մը չէ՝ որ պիտի արտասանուի սփիւռքահայ բեմերէն, քանի որ ան չի յարմարուիր բիւրեղեայ աւանդապաշտներու պահպանողական կարգավիճակին։ Եւ այս բոլորը՝ ի նպաստ բանաստեղծութեան։

***Բաւական է երգես երկաթաթերթ վարդեր-***
***Եւ քննադատն արդէն մի ամէհի խանդով***
***Կը հռչակէ քեզ մեծ ու հանճարեղ վարպետ,***

ըսած է Եղիշէ Չարենց։[27]

*Յակինթի պարտէզը* «երկաթաթերթ վարդեր» երգելէ չ՚ախորժիր։ Ոչ ալ կ՚ախորժի *Ջահակիր*ի յօդուածաշարէն։ Ան կ՚ախորժի երբ մարդիկ զայն կար-դան՝ ինչպէս որ կայ։ Կամ բնաւ չկարդան...։

Հ. ԱԻԱԳԵԱՆ

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Արամ Պաչեան, «Ցտեսութիւն, ծիտ. վերջաբանի փորձ», *Ինքնագիր*, գրական հանդէս, 14 Ապրիլ 2017, http://inknagir.org/?p=7186
2. Մարօ Սագայեան, «Հարցազրոյց դոկտ. Վարուժան Գազանճեանի հետ», *Արեւ*, 16 Մարտ 1991, 75-րդ տարի, թիւ 21723, էջ 2:
3. Բարսեղ Շահպազ, *Այլասիրութիւն եւ եսասիրութիւն (L'Altruisme & l'égoïsme)*, Աղեքսանդրիա, 1907, էջ 5-6:
4. Անդ, էջ 21-22:
5. Տիգրան Պասկեւիչեան, «Վիազրա», *Ինքնագիր*, գրական հանդէս, Երեւան, թիւ 3, 2008, էջ 94:
6. Պարոյր Սեւակ, «To be or not to be», *Երկերի ժողովածու 6 հատորով*, հատոր 6, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1976, էջ 17:
7. Պարոյր Սեւակ, «Անխորագիր», *Երկերի ժողովածու 6 հատորով*, հատոր 6, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1976, էջ 7:
8. Եղիշէ Չարենց, «Ստանդարտի գրական ծրագրի մասին», *Standard*, Ժուրնալ գրականութեան եւ արուեստի, Մոսկուա, 1924, թիւ 1, էջ 3:
9. Եղիշէ Չարենց, *Անտիպ եւ չհաւաքուած երկեր*, խմբագիր՝ Անահիտ Չարենց, Երեւան, ՀՍՍՀ ԳԱ, 1983 էջ 245:
10. Մաքսիմ Կորքիի թարգմանութիւնը կը ներկայացնեմ ըստ հետեւեալ յօդուածին՝ Ռ. Կ. Միրզախանյան, «Սոցիալիստական ռեալիզմ (ծագման և զարգացման պատմության շուրջ)», *Լրաբեր Հասարակական Գիտութիւնների*, 2013, թիւ 2, էջ 251:
11. Ռաֆայէլ Պատկանեան, *Երկեր*, Երեւան, Սովետական Գրող Հրատարակչութիւն, 1980, էջ 500:
12. *Նոր Կտակարան*, Մարկոս 8/34:
13. *Հայ թարգմանական գրականութիւն. մատենագիտութիւն 1920-2010*, Գիրք Ա. 1920-1970, Երեւան, Հայաստանի Ազգային Գրապալատի Հրատարակութիւն, 2013. Գիրք Բ. 1971-2010, Երեւան, Հայաստանի Ազգային Գրապալատի Հրատարակութիւն, 2014:
14. Սուրէն Ն. Պայրամեան, *Հայ գիրքը Եգիպտոսի մէջ 1888-2011. մատենագիտական ցուցակ*, Գահիրէ, Բօղ Քիլիտճեան Հրատարակչական Ֆոնտ, 2012:
15. Անդրանիկ Տագէսեան եւ Արմէն Իւրնէշլեան, *Լիբանանահայ գիրքը 1894-2012. մատենագիտական ցանկ*, Պէյրութ, Հայկազեան Համալսարան, 2013:
16. http://grahavak3.blogspot.com.eg./2014/03/blog-post_43.html
17. Մարքիզ դը Սադ, *Պատմուածքներ*, ֆրանս. թարգմանեց Գառնիկ Մելքոնեանը, *Գրական կամուրջ*, 17 Յունուար 2012, http://lit-bridge.com/525/մարքիզ-դը-սադ-պատմվածքներ/
18. «Մարկիզ դէ Սադ *Փիլիսոփայութիւնը ննջասենեակում*», *Գրքամոլ.am*, 26 Յուլիս 2015, http://grqamol.am/mejberumner-grqeric/marquis-de-sade-pilisopayutyuny-nnjasenyakum/
19. Բանախօսութիւնը տեղի ունեցած է 2012 Սեպտեմբեր 29-ին, Toronto City Hall-ին մէջ: Տեսագրութիւնը կարելի է դիտել YouTube-ի մէջ՝ https://www.youtube.com/watch?v=vEBGZpub1l0

20. Հրաչեայ Աճառեան, *Ժամանակակից հայոց լեզուի բացատրական բառարան*, Երեւան, Հայկական ՍՍՀ Գիտութիւնների Ակադեմիայի Հրատարակչութիւն, 1969, էջ 281, էջ 281:

21. Ասուպ [Վահան Թէքէեան], «Ծիծաղ», *Արեւ*, 6 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3091, էջ 1:

22. Այս կարծիքը մէջբերած եմ ըստ Վահան Թէքէեանի բանախօսութեան սղագրութեան. Օ. Մ., «Օտեանի երեկոյթը Ժողովրդային Սրահին մէջ», *Արեւ*, 26 Մարտ 1929, ԺԵ. տարի, թիւ 3082, էջ 2:

57. Անդ, էջ 48-52:

27. Եղիշէ Չարենց, «Մանկութիւն», *Երկեր*, Երեւան, Սովետական Գրող Հրատարակչութիւն, 1983, էջ 424:

## Ա. ՃՆՃՂՈՒԿՆԵՐՈՒ ՎԵՐԱԴԱՐՁԸ

Ճնճղուկներն այնքան հաշտ են տաճարի դատարկութեան
Թող ըլլայ քար ու շաղախ՝ մանրակերտն է երկնքին
Դուրսը ծառերն են ճիւղառատ, բայց կը փնտռեն պերճ կառոյցներ

Երբ երգեհոնը կը հնչէ
Միտքէս ամէն ինչ կը ջնջէ

Ո՞վ չի գիտեր՝ գեղակերտ տաճարէն անդին
Դատարկն է խաւարչտին, ամենակուլ խոռոչն
(Կրնայի ընտրել մէկ ուրիշ շինութիւն
Բայց ա՛յս է մանաւանդ որ օգուտ չունի
Ըլլալով ի փառս Աստուծոյ որ չկայ)
Բայց այս կուռ ու յստակ սահմաններուն մէջ
Ոչ ոք կը շփոթի՝ ո՞վ է վերջապէս
Պատկերներուն մէջ չի գտներ ինքզինք
Արձաններուն դէմ կը քննէ ուստի
Կը խորանայ բայց չի խօսիր խորանէն
Կը տարածուի ամբողջ յատակագիծով
Կը մագլցի մարմարիոն սիւներն ի վեր
Կ'արձակուի ամրակապ կամարներով
Գմբէթին հետ կը ներշնչէ վերջնական

Մինչեւ որ գմբէթը փլչի

Խումն խումբեր մայրապետներու՝ ուր որ երթաս
Անծայրածիր, ստուարավայր Ս.Պետրոսին մէջ
Տարբեր գոյներու, լեզուներով բազմապիսի
Մոռցուած մենաստաններէ՝ կեղրո՛նն հաւատքի
Իբրեւ իրենց ուխտին գերագոյն վարձատրութիւն
Կան որ կ'աղօթեն անշուշտ, կան որ ծնրադիր են
Կան որ երանի խոստովանանքն ընեն ինծի՛
Ի տես շրջապատին սքանչացումն է սակայն
Բոլորովին անյոյզ դէմքերէ արտազեղուող
Զբօսնիկներ են հիմա՝ առաջին անգամն է
Պատկերներն, արձաններն են՝ կը վիատին համրել
Լոյսն է, ոսկին, գոյները, չափերն են ու միջոցն

Ի՜նչ անծանօ՜թ գրգիռ կ՚ըմբոշխնեն մարմնին մէջն իսկ
Մոռնալո՜վ մինչեւ պահն այդ պաշտած միակ Աստուածն

Մինչեւ որ մահը չկառչի

Յարութեան պէս բան մը չէր, հրաշք-վերադարձի
Եւ միայն ես էի իր ողջութեան... չհաշտուող
Մեզի հետ էր ինչպէս առաջ, թէեւ քիչ մը չխօս
Ամենեւին չէր խօսեր իր մահուան մասին
Կարծես մեռած չըլլար երբեք, կամ տեղեակ չէր
Ես անձնապէս հագուեցուցած էի զինք
Երբ պարզապէս շունչն էր դադրած
Երկարաձիգ տառապանքէն ետք
Ծփացած էր ծիւրած իր մարմինն
Երազներ էին՝ յաճախադէպ, երբեմն, ցանցառ
Մինչեւ որ բոլորովին մոռցուեցաւ ու մեռաւ
Բայց հետերնիս է ինչպէս միշտ, հայրս ողջ է
Թէեւ զայն ողջ տեսնէի միայն երազներու մէջ
Հիմա որ ողջ է, պիտի դեռ երեւնա՞յ, թէ ալ հարկ չկայ

Միայն կեանքն է որ կը տանջէ

Ըսաւ որ ծնած էր պարտէզի մը մէջ
– Եւ այո կարծած էր այդ էր կեանքը
Ծաղիկներու, պտուղներու կենցաղն
Չխայթող մեղուէն փախուստ երբեմն
Բայց թիթեռնիկն ահա թառեցաւ ձեռքիս
– Եւ ապրած էր այնտեղ մինչեւ արբունք
Յետոյ սէրն էր՝ սկսած էր սրտով
Ու ընթացած սրտով՝ ու միշտ ալ ընդհատուած
Տենդով ու քրտինքով՝ նոր ընդհատման պատրաստ
Արբեցա՜ծ էր սէրով ու... արթնցա՜ծ
Եւ արթննաս սէրէն երբ՝ ալ երազել չկայ
Զարմանալի՜՝ պարտէզն ալ ալ չկար
Ոչ ոք կարծես ուզած էր հոն մնալ
Մատնուած էր օտար, անարժան ձեռքերու

«Ալ չեմ կրնար տոկալ ճռուողիւնին

Ինչ զիլ ժխո՛ր է մարմինս խողխողող
Ալ ձգենք ու երթանք, կը պաղատիմ»
Կանգնած էինք դուրսը՝ կայարանը
Երբ աղջիկը բացած էր իր բերանը
Ըսի՝ «Ճնճղուկներն են պարզապէս
Կա՞ն կը կարծես առաւել անվնաս
Անասուն կամ ասուն արարածներ
Երեկոյ է արդէն. կը փութան տուն»

Բայց իսկապէս ինչո՞ւ խուճապահար էին ճնճղուկներն
Երբ տուն է որ կը դառնային գիշերուան քունին համար
Չափէ՞մ ուրեմն ուղեղս իրենց ճիղճ ուղեղներուն դէմ
Երազներէ՞ն է որ կը վախնան՝ յաճախող անվրէպ
Եւ քունին դէմ ապարդիւն պայքա՞րն է որ կ'ունկնդրենք
Արտօնէ՛ ուրեմն որ վախ դնեմ սրտիդ մէջ
Յաճախէ որպէսզի ամէն առտու
(Թող ըլլայ քունդ խոր, երազներըդ՝ անուշ
Ներս ընդունիս ամէն ինչ, եւ դեռ՝ դուրսէն դիտես
Կարծես՝ ա՛յդ է արթնութիւնն, երջանկութիւնն անհատնում)
Ծառերու ճանչցած ճիւղերէդ, աչքերուդ իսկ առջեւ
Կը թփռտան, կ'ուռչին այստեղ, այնտեղ, ամէ՛ն տեղ
Ճնճղուկներն են՝ կ'անջատուին, կը ճռուողեն արդէն
Փոխակերպուած է ծառն, սարսափած են ճնճղուկներն
Սպանդէ՞ն մօտալուտ թէ՞ անսպաս ծնունդէն
(Դուն ես որ վերջ կրնաս դնել իրենց կեանքին)
Մինչ նորանոր ծնունդներէ կը ցնորին
Չեն ժպրհիր փախչիլ, կ'աճին իրենց տեղն
Սպառա՛ծ է ծառն այլեւս, կը խլացնէ՛ ճռուողիւնն

## Բ. ԳԻՐՔԻՆ ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆԸ

Վճռած ենք գտնել հին հայկական մատուռն
(Այս ցանկապատն որ կ'երկարի ո՞ւր արդեօք կը տանի
Ի՞նչ լիացնող վարձատրութիւն կը սպասէ
Յարատեւող անձին՝ անսաստ ու անսասան)
Ահաւասիկ ցանկապատին նեղ դուռն է
Կիսով խրած հողին եւ՝ տարինե՛ր՝ գոց
Կասկած կայ՝ դարե՛ր թերեւս՝ այն օրերէն
Երբ պատմագիրն ընդգրկած էր ցանկին մէջ
Բայց ցանկապատն անցատկելի պատնէշ չէ
Եւ արտօնուած է մեզի ոտնձգումն
Ամայի՜ է այլեւս գերեզմանատունն
Որ անցեալին ծաղկուն էր ու հիւրընկալ
Շիրմաթումբեր խոպան ու կմա՛խք ծառեր
Եւ ոչ մէկ հետք մեր փնտռած սո՛ւրբ մատուռէն
Որ չեմ գիտեր պիտի տար ի՞նչ գոհացում
Բայց Աստուծմէ լքուած վայրն առանձին չենք
Կասկածոտ կը նայի կարճ, կարճատեւ ծերն
Սակայն իսկոյն բերնէն թափթփեցան բառեր
Տարինե՛ր խօսելէ զրկուած էր կարծես
Կը քաշկռտէր մեզի այս կամ այն շիրիմին

Երկու բու՝ կողմերէն երկու՝ գոց-բաց գիրքերու վրայ
Մարդ միշտ կը սիրէ կարդալ շիրիմներու պատգամն
Եւ ոչինչ շրջապատող շիրիմին ընդարձակ միջոցն
Ուր անդրին է մարդուն, գլխուն՝ ֆէս ու վեր՝ գլուխներէ
Հարուստ՝ ինչպէս տեղին մեծութիւնը կը վկայէ
Գրոց-բրոց՝ զի խոր խրատ ունի տալիք այցելուին
Մեծատուն ես կամ դիւցազուն, ըլլաս նոյնիսկ արքայ
Օր մը շիրիմիդ վրայ պիտի գրուի՝ աստ հանգչի
Ճոխութեան կամ ույժի, նոյնիսկ փառքի մի՛ վստահիր
Կարդա՛ չորս տողս ու գիտցի՛ր՝ ամէն ինչ կը չքանայ

Երեքէն մին էր անկասկած, բայց չորրորդը մանաւանդ
Իր պատգամը կը փաստէ թէ է՛ այնքան իմաստուն
Բացի երբ օր մը չքանայ գերեզմանատունն ալ

Եւ մեռեալին կեա՛նքն էր որ կը բանար արագ
Ուզելով շուտ աւարտել որ անցնէր ուրիշին
Այստեղ էր, ըսենք, երբ բերուեցան թաղուելու
Բայց ի՞նչպէս տեղեակ էր անոնց ողջ կեանքին
Դեռ յիսուն, վաթսուն, ութսուն տարի գացող ետ
Աստուծոյ կրնա՞ս հարց տալ՝ ի՞նչպէս գիտէ
Չէի ուզեր յայտնէր, որ հարցն էր վեր ինծմէ
Զուարճալի էր առաջնորդն աստանդական
Բայց օձիքնիս կ'ուզենք ա՛լ ազատել
Երբ յայտնեց՝ ա՛յս արահետն էր ընտրած
Զի կը տանէր զինք կենդանի պահողին

«Անդրին որ կը տեսնէք՝ սպիտակ գեղեցկուհին
Զգլխած էր իր ձայնով ամբողջ աշխարհին
Ամէն գիշեր ծաղիկներու տարափ էր
Կը մնար ինք անմատչելի Սիրանոյշ
Մինչեւ իր Մահն որ իրեն ալ չգթաց
Համատարած ինչ վիշտ, ինչ սուգ, ինչ լաց
Քանդակագործ մը մեծ այս անդրին կերտեց
Ուխտավայր էր դարձած ահա վաթսուն տարի
Կը դիտեմ ես ալ միշտ, ու միշտ ալ կը զմայլիմ
Ա՜հ, ինչ երկար վիզ, վէս երես, անուշ աչք
Ա՜հ, անշուշտ թէ հռչակուած էր Սիրանոյշ
Ա՜հ, գեղեցի՛կ է, չէ՞ք նկարուիր առջեւն»
Միշտ նայելով պատուանդանին ուղղութեամբ
Որուն վրայ, ո՞րքան տարի, չկայ անդրի

Այս ցանկապատն որ կ'երկարի ո՞ւր արդեօք կը տանի
Հարցումէն աւելի՝ պատրուակն է հրաշալի
Ցանձնուիլ ուղիղ գիծին, չշեղիլ՝ դուրս
Ինչպէս միշտ՝ մէկը կը կանխէ զիս, հասած չըլլայ թէեւ
(Շատեր միշտ առջեւ կ'ըլլան, շատեր միշտ ետիս)
Ծեր կին մանրուկ-շիտակ, շուտ-շուտ ոտքերդ փոխող
Մարզա՞նք է թէ քմայք՝ ուզած ատենս քեզ գլել-անցնիլ
Իր քայլերուն կշռոյթով անկասկած կան քայլեր
Կը մօտենայ ոտնաձայնն, հսկայ է ան ուրեմն
Իջնէ պիտի ցանկ ջախջախող հարուածն ուր որ է

Մինչեւ որ կինն անհետացաւ դանդաղեցայ սրդողած

Եւ վերջապէս ո՞վ պիտի ուզէր այցելել
– Աչք առնելով ե՛ւ փնտռտուք ե՛ւ ճանապարհ դժուար
Բայց մանաւանդ ապարդի՛ւն փորձ եւ մոլորման վտանգ
Երբ անուն փոխած են փողոցներն ու կերպարանք –
Վաթսուն տարի առաջ մեռած բանաստեղծի տունն
Որ տարիներ շռայլելէ ետք սեռային բարիքներ
Թէ՛ բոզերու թափթփման թէ՛ խեղճացման հետ թաղին
Կը քաշքշուէր իբրեւ «խան» եւս քանի մը տարի
Երբ միտքի մարդ մը կը պարզէր զարմանալի պատմութիւնն
Այնքան նման բանաստեղծին իսկ սիրած կերպին
Կարծես ըլլար յետ մահու բանաստեղծութիւն
Որ կ'աւարտէր երբ տունը պետութիւնը կը գնէր
Եւ բանասէր-պատմաբաններու համատեղ ճիգով
Կու գային կահ-կարասիք իրենց տեղը գրաւել
«Հասայ ժամ մը առաջ / Կարդացի՝ ժամ մը կար դեռ
Թերահաւատ էի / Որ ժամ մը ետք, այստեղ
Դուռը պիտի բացուէր / – Բացուա՞ծ էր երբեւէ
Քանի տասնեակ տարի – / Բանաստեղծին հին տան
Բայց փնտռելէ ետք ի զուր / Զուտ բախտն էր բերած զիս
Ուստի եկայ կրկին / Եւ դուք դուռը բացիք
Այնքան մաքուր է հոս / Իր տեղն է ամէն ինչ
Միւս սենեա՞կն է արդեօք / Մեր ծեր բանաստեղծը»
«Ամէն օր բաց ենք մենք / Ճիշդ նշուած ժամերուն
Հի՛մա պտտեցէք / Խճողումէն առաջ
Բանաստեղծը … չկայ / Որ վռնտէ դուրս»
Այս ծեր ու կոկիկ կինն / Անկասկած տեսած չեմ
Բայց … ծանօթ է կարծես / «Հրամմեցէք այս կողմ»
Կ'իյնայ ինձմէ առաջ / Ա՛հ, կինն է հալածուող …
«Ծեր չեմ եղած ես միշտ՝ / Ակնյայտ է անշուշտ
Կը սիրէի ես ալ / Քալէին ետեւէս
Չընկըրկէին երբեք, / Փորձէին դառնալ տէ՛ր
Ըլլային նոյնիսկ բի՛րտ, / Խռովէին իմ սիրտ
Եւ – անյապաղ – մարմինս, / Որ չքնա՜ղ էր, անզի՛ղջ

## Գ. ԷԱԿԱՆՆ ՈՒ ՋԱՐՏՈՒՂԻՆ

Ե՛ս էի նստած՝ կարդալու Marquis de Sade
Այնքան տիւ ու գիշեր՝ լեզուով իմ կիսատ
Ինչ մարտ՝ բառերու դէմ, եւ ինչ աւար յայրատ
Սեռային ըսուած բնազդին գոհացման համար
Խոշտանգում, պղծում, սպաննութիւն պէս-պէս
Որոնցմէ ամիս մը ետք շատ քիչ բան կը յիշես
Կար սակայն մէկ կարեւոր բառ՝ gamahuché
Զոր որեւէ բառարանի մէջ չգտայ
Արարքը կռահել՝ շատ դժուար չէր
Բայց էականը մանրամասնն էր զարտուղի
Ահ, էականը, էականը, անհետեւանք ճգնանք
Ոչինչ այլեւս կը ցնցէ, այլեւ՝ կը ձանձրացնէ
Բայց սկսուած գործը կարելի չէ ձգել կէս
Ուստի, Իր հետ, ռռիկի մը վրայ կը ճաշակես
Տաք ձուազեղ՝ դանակէն յօշոտուող միսի՛ն հետ

Կը յուսամ գիտէք ջոկել կատակը լուրջէն

Բոլորովին պատահական է անշուշտ
Բաժանումը մարդկութեան՝ արու-էգի
(Ինչպէս որ պատահական է ամէն ինչ
Բայց նախընտրեցի օրինակ մ՚ընտրել
Որ հետաքրքրէր, գրգռէր ձեզ)
Էականը գիտակցութիւնն է գոյութեան
Անդրադարձն որ անհեթեթ է այդ գոյութիւնն
Եւ հեգնա՛նք ուրեմն՝ գիտակից գոյէն
Գիտակցութեան, գոյութեան, եւ … հեգնանքի՛ն
Ո՞ր միտքը խորունկ զբաղիլ զիջի պիտի
Հայրիշխանական կամ մայրիշխանական
Բնազդական, բանական, աստուածայի՛ն
Մեզ միշտ գերիվարող առասպելներով
Որո՞ւ հոգ որ կայ վարոց ու պուց

Բաւական բան կոտրեցի-թափեցի
Բայց չեմ կրնար զսպել զմայլելու իմ տենչն

Ոչ, ջրահարսեր չեն ջուրերէ դուրս
Այլ կին՝ կրակներո՞ւ մէջ թէ՞ կ՚այրի
Չի վառիր, չի հատնիր, չ՚անհետանար
Մարմինն այլակերպող՝ մի՞ս թէ մետաղ
Կոթո՞ղ հրաշագործ, տոչորող է՞գ
Խորհրդաւո՛ր են ջրահարսերն իբրեւ թէ
Եւ թէ՝ զգո՛յշ, զի կը կանչեն կործանման
Ո՛չ, պարզապէս թաց են ու ... թեփոտ
Ո՞վ կ՚ուզէ կին, որ մէջքէն վար ձուկ է
Կինն անշա՞րժ է պատուանդանին վրայ
Կրա՞կն է շարժումի պատրանքն ստեղծող
Թէ՞՝ հրաշքն ա՛յս է՝ օ, էգ մշտանորոգ
Եւ հարկ է զմայլի՞նք անշարժացած
Թէ՞՝ քաշե՛նք ցայլական հերքէն, բերենք վար

Իբրեւ բողոք կեղեքման դէմ ամբողջատէր
Սահմռկելի այդ աւարտն էր կինն ընտրած
Անձնական իր կեանքն համարուէր տանելի թէեւ
Միսին, միտքին, էութեա՛ն ինքնակա՛մ ողջակիզումն
Ես սակայն մոռցած էի այդ միտումն սկզբնական
Զարտուղիին, զմայլանքին, էականին ետեւէն
Ժամանակն է ձեռք քաշելու ամէն յաւակնութենէ

Մանրուկ, սահուն մարմին
Ամուր կազմ, հասուն ձիրք
Գիտես փախչիլ ձեռքէս
Երբ անզուսպ կիրքն զգաս
Պչրոտ կանչել կրկին
Ամփոփուիլ գիրկիս մէջ
Ոտքերդ քաշել վեր
Փայփայեմ, գրգեմ քեզ
Շոյես զիս, գրգռես
Ցնծուն սիրտ, վարմունք հեզ
Ունկնդիր յորդորի
Լուրջ աչք եւ յօնք կամուրջ
«Թերիներ ունիմ շատ
Անոնցմով եմ զուարթ»

Նստիմ նկարչին առջեւ քան վայրկեան
Հաճութիւն կամ դժգոհա՞նք որ յայտնեմ յետոյ
Կայ անշուշտ վայրկեաններու կախակայումն
Ի՞նչ պիտ՚ ըլլայ վերջնական արդիւնքը
Նմանակո՞ւմ խեղարուեստ թէ՞ … յայտնութի՛ւն
Նոյնիսկ կը նայինք եթէ հայելիին
Ծանօթ ենք մեր դէմքին՝ մտահոգ կամ ցնծուն
Պիտի սիրենք որ ուրիշներ ալ դիտեն
Որ տեսնուածն ըլլայ – հրա՜շք – յայտնութի՛ւն
Եւ ճիշդ այս պատճառով է որ թերեւս ես
Կը խրտչիմ ինքնակոչ նկարչէն – եւ ո՞վ
Կարող է ներսիդիէս յայտնաբերել
– Եթէ երբեւէ – ինծի անծանօթն
Մինչ ես դիմանկարս չեմ աւարտած դեռ

… Ճիշդ այսպիսի անգոյն մի գիշեր,
Արթնացել է յանկարծ իր աներազ քնից
Լէոնարտոյ տա-Վինչին,–
դանդաղ ջահը վառել,
Արթնացրել է ապա մութ անկիւնում քնած
Իր սիրելի, իր պարմանի սանին՝
Պելդրաֆիոյին,
որ մտածել է, – ճիշդ ի՛նձ պէս, –
Ի՞նչպէս՝ երակ հազիւ նշմարելի,
Եւ աղուամազ նոյնիսկ՝ սիրող սրտով
Կը ջնջէին ճերմակը կտաւէն
Յիսո՛ւս իբրեւ յայտնուելու…, –
այդ տա-Վինչու
«Խորհրդաւոր Ընթրիքը» որմնակերտի համար
Տարիներով փնտռած ու երազած
Եւ վերջապէս փոքրիկ մի կտաւի վրայ
Մեզ յիշատակ թողած Յիսուսը, Պելդրաֆիոն, Ես:

## Դ. ՅԱԻԵՐԺԱԿԱՆ ՅՆՇՈՒԹԻՒՆ

Որմնանկարներու նկատմամբ կայ երկու վարկած
Ամբողջ կեանք մը վատնող շարժումներէն
Փրկուած անշարժութիւնը միակ
Որ ժամանակին պատկանելու կողքին
Անձերու յուզիչ մտերմութիւնը կը պարզէ
Եւ մեր սրտերն են ձեր մէջ տրոփող
Ինչ որ ալ փորձէք, ձգտիք, պատռտուիք ըլլալ
Որքան ալ թափահարէք ձեր ձեռքերը, կառչիք … կեանքին
Որքան ալ ցատկռտէք, կամ աքացի տաք … մահուան
Որքան ալ գլուխներնիդ զարնէք պատէպատ
Վիճակուած է բոլորիդ ընկրկումն անխուսափելի
Անշարժացումն անփոփոխ մէ՛կ ձեւի մէջ
Որ քմահաճ բախտն է որոշեալ
Եւ որմէ ազատում չկայ, ձգտման իսկ կամք
Եւ որուն ակամայ կը սարսռանք ի տես

Այս ցանկապատն որ կ'երկարի ո՞ւր արդեօք կը տանի
Ընկրկող ճաղերէն՝ վեհաշուք ապարանքն անշարժ է
Լուսամուտերն իր ստուար՝ ներսէն դիտողին համար
Վստահաբար արուե՛ստ են՝ իւղաներկերուն կողքին

Ո՛չ, մի՛ ստիպէք մտնել փարթամ հանդերձանքի մէջ
Վերածնունդն ըլլայ թէեւ Եւրոպայի
Սիրելի է բայց եւ իւղանկար մը դիտել
Ուր դահլիճ է մեծ վայելուչ՝ իր խորքին մէջ կորսուող
Եւ զբաղ են այնտեղ մեծատուններ բազմապիսի
Ոչ միայն հարցեր կը ծեծուին պետական մակարդակի
Այլեւ վայր է վաճառաշահ կարգադրութեանց
Եւ դեռ կը պատուիրուին արուեստի նորանոր գործեր
Արձաններուն, նկարներուն նման՝ ճոխացնող – ե՛ւս – ամբոխն
Արդարեւ չեմ ծածկեր՝ կ'ուզէի ըլլալ հոն
Բայց ի զուր մի ճգնիք երկար փնտռելով զիս
Նայած եմ շուրջս այնքան, զննած մէկ-մէկ դէմքերն
Աւա՜ղ, ոչ ոք կը հաճի նմանիլ – քիչ մը – ինծի
Պատէն կախուած նկարէ՛ն է որ կը դիտեմ դահլիճն

Բանաստեղծ եմ թէեւ, չեմ նեղանար
Եթէ դիմացինս չհասկնայ
Թէեւ կեանքս է բանաստեղծութիւնն
Այնքան լայն է բանաստեղծի աշխարհին
Որ չհասկցողն ալ իր տեղն ունի

Միայն եթէ ամէն վայրկեան յիշեմ

Ապրուած պա՞հն է բանաստեղծութիւն
Թէ՞ փորձը զայն թուղթի վրայ ժողվելու
Բառերու հարց է – կրնայի ըսել`
Բանաստեղծութիւն է որեւէ պահ
Երբ որոշենք, ապացուցենք որ է
Թէ՞` հարցը բառն է – պահն արդէն պատկեր
Ամբողջական, այլամերժ, անթերի
(Տեսնողին համար, ոչ` կոյրերուն)
Բանաստեղծելու ամէն փորձ` եղծում
Թէ բառն է ամէն ինչ, սկիզբ ու վերջ
Եւ պատկեր չէ պահն, այլ պատրանք միայն
Եւ ինչ որ յաջողիս անշարժացնել
Հպումովդ իսկ փոփոխուող պատրանքէն
Բանաստեղծութի՛ւնն է անխոցելի

Ընկրկող ճաղերէն` վեհաշուք ապարանքն անշարժ է
Լուսամուտերն իր ստուար` ներսէն դիտողին համար
Վստահաբար արուեստ են` իւղաներկերուն կողքին

Այս պարտէզին մէջ
Յակինթի պարտէզին
(Ծաղիկներն այնքան սիրած եմ
Անգիտանալով, հոգ չէ, անունններն
Ուրեմն ինչո՞ւ յակինթն ընտրեցի
Իր պարտէզին մէջ շրջագայելու)
Որ միայն պարտէզ չէ
Պարտէզն ուր դուք ալ
Ազատ էք պտտիլ
Այլ միշտ կը յուշէ
Որ բանաստեղծ եմ

Կը զարմանամ ինչպէս
Պատրաստ եմ նոյնիսկ
Այլեւս չգրել
Բանաստեղծութիւն
(Յակինթին մասին կարդացի
Թերեւս տեսած եմ նոյնիսկ)
Կ'ապահովէք եթէ
Պիտի մնամ այստեղ
Պարտէզին մէջ – միշտ

Արուեստի գործ մը ցնծութիւն է յաւերժ
Չկարենաս թէեւ յաւերժանալ առջեւն
Այր-ու-կիներն անծանօթ՝ առանձին կամ միասին
Մեղմ լոյս ինկած դէմքերուն՝ այնքան որ հմայեն
«Լքէ՛ ինչ որ ունիս եւ միացի՛ր մեզի»
Իսկ դուք՝ երբ ողջ էիք՝ միացա՞ք արդեօք ձեզ
Բայց հիմա նախանձելի է ձեր գոյութիւնն
Անվրդով, եթէ նոյնիսկ մնայ սրահն ամայի
Ոչինչ, ոչինչ թէեւ պահէք այցելուէն
Որ, այսուհանդերձ, ձախողի առնել
Արուեստն արդէն գիտութիւնն է սպասման

Որպէսզի ժամանակն երկարի
Կը սպասեմ արգիլուած վայրկեանին
Անցորդներ կը փնտռեմ այս պահուս
Կը սպասեմ՝ աչք նետեն կասկածոտ
Բացայայտ ու ծածուկ նիստիս մէջ
Ո՛չ ժամ է ո՛չ տեղ է հանգիստի
«Վայրկեաններն է որ կը համրես, չէ՞
Այս չէ այն տեղն ուր կ'ուզես երթալ
Դժուա՞ր է թէ հե՞շտ է սպասել
Արգիլուած վայրկեանին՝ ակնկալ»
Գա՛ր այլեւս արգիլուած վայրկեանն
Դաժան ժամանակն երկարէ՛ր

## *Ե. ՀԱՅՐ ԻՄ ՈՐ ՅԵՐԿՐԻ ԵՍ*

Ըսել չեմ ուզեր որ կը սիրէի հայրս
Եւ արդէն այդ չէ որ պիտի հասկնաք

«Յետոյ ազատ ձգեցին մեծ պարտէզի մը մէջ
Շուրջերնիս ծառ ու ծաղիկ, աղբիւր ու առու
Կը տեսնէինք շատեր պտուղներ կը քաղէին
Առանց որ մէկն արգիլէր, կամ սահմանէր պատիժ
Ու չկար խտրութիւն, շատցուցինք մենք ալ շատերն
Կը կթէինք ողկոյզն հատիկ-հատիկ, անյագ
Կը խածնէինք խնձորն, կը ծծէինք ծիրանն
Կը ձգէինք դեղձերն ծորէին շրթներէ վար
Կը լափէինք սալորն, կը կլլէինք կեռասն
Բայց … շատերէն շատեր՝ պտտող մեզի նման
Մեծեր էին անուանի՝ գիտութեան, արուեստի
Պահն էր պարզ հանգիստի եւ զրոյցի երջանիկ
Բայց երբ վայելքն անբաւ սովորական է այդքան
Ի՞նչպէս ակնկալես՝ գիտնան՝ դրախտն է այդ»
Բայց Ուղեւորի Տպաւորութիւններէն ետք
Իր շուրջ յամեցող քանի մը ծանօթ մարդոց
Գաղտնապահ շեշտով խօսելով գիտցողներուն
«Ազատութիւն չկայ. բացարձակ բռնատիրութիւն է
Նշմարեցիք անշուշտ ըսի՝ Յետոյ ազա՛տ ձգեցին…
Կալանուած է որովհետեւ ժողովուրդը… վախով
Եւ դրախտը մեզի հրամցուած… խաբուսիկ է
Առանձնաշնորհեալներու համար միայն ու… հիւրերու»

Հիթլե՛րն էր առաջինն, եթէ չեմ սխալիր
Յանկարծ տեսայ զինք՝ կը նմանէր իմ հօր
Եւ ծպտա՛նք էր պեխն՝ այդքան աչք-ծակող

«Ուս իսկ թօթուել առաջարկելի չէ
Ոչ միայն ոչ պիտի երբեք չըսես
Այլեւ այոն յստակ ու յատուկ առոգանութեամբ
Որ յանկարծ մէկը տեղ մը սխալ չհասկնայ
Եւ ինչո՞ւ այո չըսել՝ այնքան ալ սխալ չէ
Ամէն ոք գիտէ որ սուտ է որ ըսուածը կայ

Բայց ըսուածն ըսենք սուտ չէ այլ գեղեցի՜կ
Օրինակ՝ «Անընդհատ զարգացումը Մարդու
Ամենաարժէքաւոր անհատական կարողութիւնների,
Յանուն նրա յաղթանակի բնութեան ուժերի դէմ,
Յանուն նրա առողջութեան ու երկարակեցութեան,
Յանուն երկրի վրայ ապրելու նրա մեծ երջանկութեան»
Օր մըն ալ կ'առնէ ու կը տանի իր հետ
Գոչէ՜ այո եւ յետոյ հետը գնա՜ գծած ճամբայէդ
Եւ կոչեն թող քեզ ինչ որ կը սիրեն ու սովոր են կոչել
Պիտի տեսնես շատեր կ'ընկերանան քեզի»
Շահած էի իր բացարձակ վստահութիւնն
«Ազատութիւն մեր մօտ ալ կայ, նոյն ազատութիւնն
Որ կը սկսի այոյով ու կ'ընթանայ անարգել
Դիւցազնական կրնայ ըլլալ կամ ծաղրածու
Լուրջ-իմաստուն կամ պչրոտ-ծանծաղ
Անկաշառ քննադատ, շնական քմծիծաղ
Սիրային-յուզական՝ աչքերէն քամող արցունք
Տարփական-տռփական մինչեւ-մինչե՜ւ կտղո՜ւցք
Միշտ գոչելով այո, այո՜, այո՜»

Ինչո՞ւ կը գրեմ այսպէս ճկոյթիս ծայրով
Պարտկելու համար ո՞ր անձկութիւնն
Եւ քստմնելի յայտնաբերումն որ կը մերձենայ
Դէպի Հիթլե՞ր կը դիմէ, թէ՞՝ հայր իմ՝ քեզ

…Կղկղանքով նոյնիսկ՝ մարդկային-անասնային
Պայմանաւ որ չպատճառէ մարմնական վնաս
Թէ ոչ՝ քրէական օրէնքին նախատեսած
Նուազագոյն պատիժին կ'արժանանայ
Երբ օրուան զեկոյցին համար մտնէ սրահ
Պէտք է ըլլան աչքերը վար, ճակատը՝ հակ
Բացարձակապէս արգիլուած է ձայն բարձրացնել
Եւ թող կրկնէ ամէն պարբերութենէ առաջ
«Տիկիններ եւ պարոններ, խնդրեմ, ներեցէք»
Քանի իրեն վիճակուեցաւ նախագահի պաշտօնն
(Օ, հեռու պահէ, Աստուած, մեզմէ այդ փորձն)
Արժանի դարձաւ մեր ծայրագոյն քամահրանքին
Պիտի չարտօնենք որ երբեւէ ռեւէ յիմար

Աշխարհին անգամ մըն ալ առաջնորդէ կործանման

Յետոյ սակայն Ֆարուք, Այզընհաուըր, Թալէաթ
Եւ անհաշիւ ուրիշներ՝ նոյն խեղ ցեղէն
Նոյն խորամանկ, խորազուարթ աչքերն
Որ աւելի բարութիւն է որ կը մատնեն
Միջին հանգիստ տարիքն որ չի վախնար մահէն

Ինչո՞ւ պախարակել նախամարդը
100ը հազիւ համրելուն համար
Երբ Ֆրանսուա՝ Ֆրանսայի նախագահը
(Ժողովրդավար այս մէկն՝ երբ կը գրեմ հիմա)
Կը նշէ հասած է 78ի
Կը հաստատէ համե՛ստ պէտք է ըլլալ
(Ինչ անիրաւ, զրպարտո՛ղ են մարդիկ
Այսքան տարի՝ 14, 2 շրջան
Պիտակելով զինք հպարտ, ամբարտաւան
Ահա գլուխ կը ծռէ մահուան դիմաց)
Զ՚ըսեր որ կ՚ուզէ զինք ժողովուրդը
Զի չափազանց կիրթ է, փափկանկատ
Ա՛լ կը հրաժարի հանրային գործէ
Չի դներ՝ 3րդ անգամ՝ թեկնածութիւնը

## Զ. ՅԱԿԻՆԹԻ ՊԱՐՏԷԶԸ

Ճնճղուկներն այնքան հաշտ են տաճարին դատարկութեան
Թող ըլլայ քար ու շաղախ՝ մանրակերտն է երկնքին
Դուրսը ծառերն են ճիւղառատ, բայց կը փնտռեն պերճ կառոյցներ
Կը թռչկոտեն երբեմն, յաճախ կը մնան անյայտ
Մինչ վերեւէն՝ միշտ մեղմ՝ կ՚արձագանգէ ճռուողիւնն
Իբրեւ հեզ հրաւէր ճշմարիտ հայեցումի
Ուշքդ գրաւելու համար չեն անոնք արշաւած ներս
Գորշ են քարերուն նման որոնցմէ կ՚արձակուին մերթ
Փոքր են արդէն եւ դեռ կը թեւածեն հեռուն երբ
Կը հաւատաս ճնճղուկնե՛ր են՝ իրենց ճռուողիւնէն
Տաճարին գեղեցկութիւնն է անճառելի ու անպարտ
Կեանքի կոչող կորնչական ու ճիղճ այդ էակներն
Իր անհպարտ էութեան ապացոյցն իբրեւ անառարկելի
Խորհրդածման արժանի՝ մշտատեւ ու անփոփոխ
Բայց պէտք է տաճարէն ելլել դուրս վերջ ի վերջոյ
Կոխոտել պարտէզին հողն, հոտոտել յակինթներն
Այս վայրկեանին կը սպասէիք բոլորդ, չէ՞

«Յակինթներ տուիր ինծի տարի մը առաջ,
Յակինթի աղջիկը կոչեցին զիս»:
Պարտէզին մէջ էինք ուրեմն
Ելած էիր յետոյ պարտէզէն դուրս
Հեռացած էիր ինձմէ ու լքած զիս
Յակինթներն առնելով քեզի հետ
Յիշատակ իբրեւ բայցեւայնպէս
Եւ երբ հմայուած մատչեցան քեզի
Շնորհակալ եղա՞ր սրտիդ խորերէն
«Բայց երբ դարձար ետ, ուշ, Յակինթի պարտէզէն,
Թեւերդ լի, եւ մազերդ թաց, չկրցայ
Խօսիլ, եւ աչքերս դաւաղրեցին, չէի ոչ
Ողջ ոչ մեռած, եւ ոչինչ գիտցայ,
Նայելով խորքը լոյսին, լռութեան»
Թէ՞՝ սխալած ես բոլորովին
Այդ դուն էիր պարտէզ փախչած
Կաշկանդումէս ազատելու փորձով
Ի՞նչ ըրած էիր այնտեղ երկար

Ամբողջ օրն ու մինչեւ գիշեր
Ինչո՞ւ էին մազերդ թաց
Ուրիշի՞ մը հետ արդեօք եղար
Բուռն ու բերկրալի արարքէն ետք
Ա՞ն էր նուիրած յակինթներն
Ա՞յդ էր զքեզ այլափոխողն
Ինչո՞ւ յակինթներն ինծի բերիր
Ասոնցմէ ո՞րն էր որ ուշազրկեց
Թէ՞՝ այդ միւսին հետ կը շփոթես զիս
Թէ՞՝ ես եմ – ինչպէս միշտ – շփոթ
Կարծելով թէ բանաստեղծութիւն է

Եւ վերջապէս ի՞նչ է բանաստեղծութիւնն

Ինչ որ այսօր բանաստեղծական կը նկատուի
Բռնազբօսիկ է վաղն ու ծանրաքարշ
Ինչ վախազդու բան է բանաստեղծութիւն գրել
Եւ ի՞նչպէս ձերբազատուիլ բանաստեղծականէն

Ապրուած պա՞հն է բանաստեղծութիւն

Կեցած էի՝ մանուկ՝ զամբիւղիս մօտ
Եկաւ ու խլեց՝ անտեսելով զիս
Միտքէս անցաւ ըսել՝ զամբիւղն իմս էր
Ես էի ընտրած, քաղած ծաղիկներն
Իմ փոքրիկ պարտէզն որ ունենայի
Մինչ ինք զամբիւղին մէջ քիթը խոթեց
Քիթին չդրաւ բոյրերու խառնուրդն
Ետ պիտի դարձնէ՝ մտածեցի
Սակայն չէր պատկաներ այլեւս ինծի
Ինչո՞ւ չպոռացի որ հեռանար
Ինչո՞ւ չկառչեցայ իմ զամբիւղին
Պարտէզին մէջ կը պատժուի պիղծ ուժն
Ինչո՞ւ չկանչեցի արդարութիւնն
– Ուզած չէի կանչող կոչէին զիս

Թէ՞ բանաստեղծութիւն է որեւէ պահ
Երբ որոշենք, ապացուցե՛նք որ է

Անձայն, առանձին կու լար
Աղջնակն երեք գարունի
Նման անհիրաւուած մարդուն
Որ անզօր է չարը բառնալ
«Մայրիկս ու հայրիկս գացին»
«Գացին… ո՞ւր» «Գացին… դո՛ւրս»
Հազիւ կ’երեւէր հեռուն դուռն
Իր հսկայ ուղեկիցը դարձայ
Եւ անցանք վերջին կամուրջէն
Երբ ձեռքը ափէս արձակեց
Անվստահ էր պահ մը, շուար
Կը կանգնէր, կը նայէր ետ
Արագցուց քայլերն յետոյ
Հեռացաւ պարտէզէն
Պահէի՞ պէտք է իմ մօտ
Ջինք լքող ծնողքէն անջատ
Ընծայելու պարտէզին կրթանքին
Յանցանքի զգացում ու կարօտ
Ապրիլ այս ամսոյն անագորոյն

Թէ՞՝ բանաստեղծութի՛ւնն է միայն որ կրնայ
Տարածել սահմաններն բանաստեղծութեան

Such was that happy Garden-state
While man there walk’d without a mate:
After a place so pure and sweet,
What other help could yet be meet!
But ‘twas beyond a mortal’s share
To wander solitary there:
Two paradises ‘twere in one,
To live in Paradise alone.
And why not, Marvell, with a mate,
If she too knows the lonely state?
Let mating be the lesser joy,
Let’s justify it as a ploy:
A brief egress from happiness
May bring an even greater bliss.

Միշտ ուզած եմ վիճիլ բանաստեղծներու հետ
Բանաստեղծութեան մէջ՝ յարմար վայրը միակ
Այնքան հրաշազօր է արուեստն իրենց
Ընդդիմախօսն իսկ կը փոխակերպէ

Թէ՞ բանաստեղծն է ամենակարող
Եւ որեւէ բան որուն դառնայ
Բանաստեղծութիւն է արդէն

«Սա էլ գիտե՞ս ինչ ծաղիկ է»,– ասաց
Ու ծիծաղելով երեսս նայեց: «Ծառից որ պոկած լինէիր
Եասաման է կ'ասէի»,– ասի:
«Եասամանը այսպէ՞ս է լինում,-
Ասաց,- դու մի հոտ քաշի»: Հոտ առի, դա էլ մի ուրիշ
Հոտ ունէր, գուցէ նարգիզից էլ լաւ: «Սա ի՞նչ է»,- ասի:
«Պապան դրան հորուտ-մորուտ էր ասում,- ասաց,-
Բայց մեր տեղի բառով դրա անունը չգիտեմ
Ինչպէս են ասում, ռուսը հիացինթ է ասում.
Դա էլ սերմ չունի, սողանից է բսնում,
Մեռելի միս ուտողի մէկը, պապային ասածին,
Նուէր է բերել հայի կողմերից. ասածներից այնպէս է
Դուրս գալիս, որ այնտեղի դաշտի ծաղիկ է,
Երբ որ օրերը գալիս են, ամբողջ աշխարհը
Փռւում է այս ու այսպէս ծաղիկների հոտով»:

*17 Սեպտեմբեր 1994*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

## 2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ*, նախաբան՝ Հայկ Աւագեան (59 էջ)

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)* (40 էջ)

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան (61 էջ)

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը* (202 էջ)

## 2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (317 էջ)

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (201 էջ)

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (561 էջ)

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (546 էջ)

Յաւելուած Թ.
*Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948)*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (88 էջ)

Յաւելուած Ժ.
*Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ (ծննդեան 135-ամեակին առիթով),* հաւաքեց՝ Հ. Աւագեան (73 էջ)

Յաւելուած ԺԱ.
*Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (53 էջ)

2018

Յաւելուած ԺԲ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Ա.- Հայկ Աւագեան, *Արփիար Արփիարեանի սպանութիւնը* (155 էջ)

Յաւելուած ԺԳ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Բ.- *Արփիար Արփիարեանի լոնտոնեան թղթածրարը Գահիրէի մէջ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (497 էջ)

Յաւելուած ԺԴ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Գ.- *Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով (1890-1908)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (169 էջ)

Յաւելուած ԺԵ.
*2008 Մարտ 1-ը ըստ* Lragir.am*-ի,* A1+*-ի եւ Հետքի (10-ամեակին առիթով)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (625 էջ)

Յաւելուած ԺԶ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Ա. փուլ (13 – 23 Ապրիլ 2018)* (32 էջ)

Յաւելուած ԺԷ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Բ. փուլ (25 Ապրիլ – 1 Մայիս 2018)* (58 էջ)

Յաւելուած ԺԸ.
*Արմենակ Շահ-Մուրատեան. ժամանակագրութիւն, յօդուածներ, երգացանկ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (580 էջ)

Յաւելուած ԺԹ.
*Գոհարիկ Ղազարոսեան. ցանկ ստեղծագործութիւններու, սկաւառակագրութիւն*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (160 էջ)

Յաւելուած Ի.
Մարուշ Երամեան, *Ուրուանկար 1965-1995 թուականներու Սփիւռքահայ բանաստեղծութեան*, ներածութիւն՝ Հայկ Աւագեան, գնահատանքի խօսք՝ Արմենակ Եղիայեան (182 էջ)

2019

Յաւելուած ԻԱ.
*Քիրազ. ընտրանի եգիպտական շրջանի երգիծանկարներու*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (81 էջ)

Յաւելուած ԻԲ.
Հայկ Աւագեան, *Վահան Թէքէեանի յօդուածները* Արեւ *լրագիրին մէջ. հնարաւորութի՞ւն թէ դիմադրութիւն* (124 էջ)

Յաւելուած ԻԳ.
Հայկ Աւագեան, *Արամ Խաչատրեանի ընկալումը եգիպտական շրջանակներու մէջ. փոխուող յարացոյցներ* (250 էջ)

Յաւելուած ԻԴ.
Վարան Ոյժ, *Յակինթի պարտէզը* (բանաստեղծութիւն), նախաբան՝ Հ. Աւագեան (52 էջ)